## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս
ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենա-
գրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդ-
վածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի
տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հա-
յաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան
ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հե-
ղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը,
հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդ-
վածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ
է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկա-
վարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների
աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղ-
վածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատու-
թյունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործ-
ված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն
անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի
մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 ՀՈՒՆԻՍ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» —теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Կուսակցության գաղափարականության մեծ ուժը. ՀԿԿ Կենտկոմի առաջին քար-
տուղար Ա. Ե. Քոչինյանի զեկուցումը հանրապետական կուսակցական
ակտիվի ժողովում, 1974 թ. մայիսի 14-ին . . . . . 3

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ— Հանուն գաղափարական-քաղաքական աշխատանքի բարձր
մակարդակի . . . . . . . . . 24

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Ց. Գ. ՆԻԿՈՅԱՆ— Կուսշրջկոմը և սոցիալիստական մրցումը . . . 32

Հ. Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Տնտեսագիտական կրթությունը և արտադրությունը . 37

Պ. Ա. ՊԱՊՅԱՆ— Կոմունիստի անձնական օրինակը . . . . . 42

Շ. Ս. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Միութենական հանրապետության ազգային եկա-
մտի արտադրության կանխատեսման մասին . . . . . 46

ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

ԱՂԱՏՈՒՀԻ ՍԱՌԱՖՅԱՆ— Տեխնիկական առաջընթացի արագացուցիչը . . 53

Վ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Տեղական արդյունաբերության կառավարման կատա-
րելագործումը . . . . . . . . . 57

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

ԹԱՄԱՐ ՊԱՊՅԱՆ— Ռուսական պոեզիայի հանճարը . . . . . 61

Մ. Ս. ԴԱՆԻԵԼՅԱՆ, Լ. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Մեծ մտածողն ու հումանիստը . 68

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

Գ. Ա. ԵԳԱՆՈՎ— Եվրոպական տնտեսական համագործակցության միջերկրա-
ծովյան քաղաքականությունը . . . . . . . 75

Ա. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— «Աֆրիկյան սոցիալիզմի» կոնցեպցիայի էու-
թյունն ու հիմնական բովանդակությունը . . . . . . 79

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

Ա. Գ. ՄԵԼՔԻԿՅԱՆ— Ձեռնարկության կոլեկտիվի սոցիալական զարգացման
պլանավորումը և կոմերիտական կազմակերպությունների խնդիրները 85

Ռ. Ա. ԱՎԱԳՅԱՆ— Մարտնչող մատերիալիստի իմացության թեորիան . . 92

## СОДЕРЖАНИЕ


**Великая сила политики партии:** Доклад первого секретаря ЦК КП Армении А. Е. Кочиняна на собрании республиканского партийного актива 14 мая 1974 г. . . . . . . . . . 3

**Передовая** — За высокий уровень идейно-политической работы . . 24

**ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ**

**Ф. Г. Никоян** — Райком партии и социалистическое соревнование . . 32

**А. А. Геворкян** — Экономическая учеба и производство . . . . 37

**П. А. Папян** — Личный пример коммуниста . . . . . . 42

---

**Ш. С. Маргарян** — О прогнозировании производства национального дохода союзной республики . . . . . . . 46

**АКТУАЛЬНЫЕ ЗАДАЧИ ПЯТИЛЕТКИ**

**Азатуи Сарафян** — Ускоритель технического прогресса . . . . 53

**В. М. Карапетян** — Усовершенствование управления местной промышленности . . . . . . . . . . 57

**ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ**

**Тамара Папян** — Гений русской поэзии . . . . . . . 61

**М. С. Даниелян, Л. А. Абрамян** — Великий мыслитель и гуманист . . 68

**МЕЖДУНАРОДНАЯ ЖИЗНЬ**

**Г. А. Еганов** — Средиземноморская политика Европейского экономического сообщества . . . . . . . . 75

**А. А. Арутюнян** — Сущность и основное содержание концепции «Африканского социализма» . . . . . . . . 79

**ТРИБУНА МОЛОДОГО НАУЧНОГО РАБОТНИКА**

**А. Г. Мелкикян** — Планирование социального развития коллектива предприятия и задачи комсомольских организаций . . . . 85

**Р. А. Авакян**—Теория познания воинствующего материалиста . . . 92






# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՈՒԺԸ

## ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

### ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ԺՈՂՈՎՈՒՄ, 1974 Թ. ՄԱՅԻՍԻ 14-ԻՆ*

*Ընկերնե՛ր: Վերջերս սովետական ժողովուրդը հանդիսավոր պայմաններում նշեց խոպան հողերի յուրացման 20-ամյակը: Հոբելյանը վերածվեց մեծ ու բերկրալի տոնի:*

*Մեր երկրի աշխատավորները հսկայական հետաքրքրությամբ ու ոգևորությամբ ընդունեցին այդ առթիվ Ալմա-Աթայում տեղի ունեցած հանդիսավոր նիստում Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի փայլուն ու խորապես բովանդակալից ճառը, որտեղ բազմակողմանիորեն բացահայտված են խոպան հողերի յուրացման հիմնական արդյունքները, տրված են արդի էտապում կուսակցության ագրարային քաղաքականության գլխավոր ուղղությունները, վերլուծված են երկրի սոցիալ-տնտեսական և միջազգային հարաբերությունների այսօրվա հրատապ պրոբլեմները:*

*Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը կուսակցական աչքի ընկնող փաստաթուղթ է և ունի տեսական, քաղաքական ու պրակտիկ հսկայական նշանակություն:*

*Երկրի ժողովրդատնտեսական կարևորագույն ճյուղի՝ գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման խնդիրները մշտապես գտնվել և ներկայումս էլ գտնվում են կոմունիստական կուսակցության ու նրա Կենտրոնական կոմիտեի ուշադրության կենտրոնում: Եվ դա հասկանալի է. գյուղատնտեսության վերելքը կուսակցության տնտեսական քաղաքականության այն կուրսի բաղկացուցիչ մասն է, որն ապահովում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ուղղված է սոցիալիստական վերափոխումների իրականացման և նոր հասարակարգի կառուցման նպատակին:*

*Այդ ասպարեզում կուսակցության, սովետական ժողովրդի տարած խոշոր հաղթանակը եղավ խոպանի յուրացումը, մի էպոպեա, որը մեր երկրի աշխատանքային հերոսական տարեգրության մեջ կմնա որպես նրա փայլուն և չխամրող էջերից մեկը:*

*Մեր կուսակցությունը օրինական հպարտության զգացումով հանրագումարի բերեց իր քաղաքական կուրսի և խոպանում նորարարական մեծ աշխատանքի արդյունքները: Երկու տասնամյակի ընթացքում յուրացվեց 42 միլիոն հեկտար խամ ու խոպան հող, որից ստացվեցին մոտ 31 միլիարդ փութ հացահատիկ, գյուղատնտեսական շատ այլ մթերքներ: Ներկայումս յուրացված*

---

* Տպագրվում է որոշ կրճատումներով:

հանրապետության գյուղատնտեսական մթերքների արտադրության համախառն արտադրանքի ավելացման՝ հնգամյա պլանով սահմանված առաջադրանքների կատարումը:

Այսպես շարունակել չի կարելի, ընկերնե՛ր: Մենք պարտավոր ենք կարճ ժամանակում բեկում մտցնել բարձր եկամտաբեր այդ ճյուղերի վերելքն ապահովելու գործում, աշխատանքի ծրագիր ունենալով ՀԿԿ Կենտկոմի հիշյալ պլենումի որոշումները:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և համախառն բերքի ավելացման վճռական պայմանը հողի ռացիոնալ օգտագործումն է:

Ինչպես գիտեք, հողը հարստության աղբյուր է, գյուղատնտեսության հիմնական արտադրամիջոցը: Այն պետք է պահպանել և առավելագույն արդյունավետությամբ օգտագործել: Բայց ամենուրեք չէ, որ մենք այդպես ենք վարվում: Այստեղ կարելի է հանդիպել և՛ շռայլության, և՛ անտնտեսվարության, և՛ անպատասխանատու վերաբերմունքի բազմաթիվ փաստերի:

Նախ ասենք, որ մի շարք շրջաններում վարելահողի զգալի տարածություններ չեն օգտագործվում: 1973 թվականին հանրապետությունում մոտ 30 հազար հեկտար վարելահող դուրս է մնացել գյուղատնտեսական շրջանառությունից: Դրանք մեծ մասամբ կարելի էր օգտագործել կերային կուլտուրաների ցանքի տակ, բայց չարվեց:

Ավելի զայրացուցիչն այն է, որ գյուղատնտեսական կուլտուրաների մշակության չեն հատկացվում նույնիսկ ոռոգելի հողատարածությունները: Անցյալ տարի զանազան պատճառներով կոլտնտեսություններում ու սովխոզներում չօգտագործվեցին 9.647 հեկտար ջրովի հողեր:

Կամ հողօգտագործման ասպարեզի մեկ այլ թերություն: Չնայած այն բանին, որ շատ միջոցներ են հատկացվում նոր հողերի յուրացմանը և ամեն տարի իսկապես որ բավականին հողատարածություններ են շարք մտնում, բայց հանրապետության հողային ֆոնդի հաշվեկշռում մեծ աճ գրեթե չի նկատվում, որովհետև հաճախ զանազան պատճառներով գյուղատնտեսական գործածությունից դուրս են գրվում զգալի ցանքատարածություններ, նույնիսկ ոռոգելի հողեր:

Այսպես, քիչ չեն դեպքերը, երբ արդյունաբերական, շինարարական, նախագծային առանձին կազմակերպություններ որևէ օբյեկտի կառուցման համար, առանց դրա խիստ անհրաժեշտության, օգտագործում են ջրովի, գյուղատնտեսության համար պիտանի վարելահողեր: Այդ առումով հողի նկատմամբ անտարբեր, ես կասեի անհոգի վերաբերմունք են ցուցաբերում շինանյութերի արդյունաբերության և ավտոմոբիլային ճանապարհաշինության ու շահագործման մինիստրությունները, երկրաբանական վարչությունը և մի շարք այլ կազմակերպություններ, որոնք աջ ու ձախ օգտագործելով հողային զգալի զանգվածներ, անգամ չեն էլ մտածում այնտեղ կատարել ռեկուլտիվացիոն աշխատանքներ:

Միայն Արարատյան դաշտում ավազի արդյունահանման հետևանքով ավելի քան 1.000 հեկտար վարելահողեր դուրս են եկել գյուղատնտեսական շրջանառությունից: Այս ու այնտեղ կոպիտ կերպով խախտվում են հողային օրենսդրության պահանջները: Գյուղատնտեսության մինիստրության, քաղաքային ու շրջանային սովետների գործադիր կոմիտեների թողտվության և անբավարար հսկողության հետևանքով արդյունաբերական, շինարարական և կենցաղային աղբով աղտոտվում են զանգվածային հողատարածություններ:

Հողի արդյունավետ օգտագործումը մեզ համար կենսական անհրաժեշտություն է: Ով չի ուզում հաշվի նստել դրա հետ, նա արգելակում է գյուղատնտեսական արտադրության առաջընթացը, հետևապես և վնասում ընդհանուր գործին:

Հանրապետության գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման շահերը հրամայաբար պահանջում են, որպեսզի մենք առաջիկայում, հողի պահպանմանը և արդյունավետ օգտագործմանը զուգընթաց, ավելի բազմա-



կողմանի ու ծրագրված աշխատանք կատարենք նոր տարածությունների յուրացման ուղղությամբ, այդ պրոբլեմի լուծմանը ցուցաբերելով կոմպլեքսային մոտեցում՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հիման վրա:

Այս առումով, մեզ համար կարևոր նշանակություն են ստանում հատկապես Արարատյան դաշտի հողատարածությունների համակողմանի յուրացումը, գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացումն ապահովելու նպատակով դրանց պոտենցիալ հնարավորությունների ու ռեզերվների լրակատար օգտագործումը: Խոսքը այստեղ մոտավորապես 34 հազար հեկտար գերխոնավ հողերի մելիորացման, 30 հազար հեկտար աղուտների աղազերծման և դրանք գյուղատնտեսական շրջանառության մեջ ներգրավելու մասին է: Ճիշտ է, այդ, մասնավորապես, աղուտ հողերի յուրացման բնագավառում որոշ աշխատանքներ կատարվում են, սակայն դրանք խիստ դանդաղ են ընթանում և մանավանդ դեռ հարկ եղած արդյունքը չեն տալիս:

Ժողովրդատնտեսական այս կարևորագույն պրոբլեմը լուծելու նպատակով հանրապետության կուսակցական, սովետական, պլանային օրգանները, մասնավորապես գյուղատնտեսության, մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունները և մյուս գերատեսչությունները, գիտահետազոտական ու նախագծային կազմակերպությունների հետ մեկտեղ, պարտավոր են շատ կարճ ժամկետում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և կառավարության քննարկմանը ներկայացնել Արարատյան դաշտի հողերի յուրացման գլխավոր սխեմաները, առավել օպտիմալ լուծումներն այն հաշվով, որպեսզի արդեն առաջիկա տարիներին, հենց եկող հնգամյակում գիտության ու տեխնիկայի արդի պահանջներին համապատասխան մշակված միջոցառումների իրականացման ծրագիրը մտնի պետական պլանների մեջ և ստանա օրենքի ուժ:

Հանրապետության գյուղատնտեսության այսօրվա նյութատեխնիկական բազան, կազմակերպական ու տեխնիկական մեր պրակտիկան, հանրային արտադրությունը գիտական հիմունքներով վարելու հմտություններով օժտված մեր կադրերը, գյուղի աշխատավորների բազմահարուստ փորձը հնարավորություններ են ընձեռում համեմատաբար սեղմ ժամկետներում իրականացնելու առաջադրված այդ կարևորագույն խնդիրը:

Առաջնորդվելով ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում առաջադրված դրույթներով և ելնելով գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման շահերից, անհրաժեշտ է Արարատյան դաշտի յուրացված հողատարածություններում ստեղծել խոշոր մասնագիտացված քաղաքամերձ տնտեսություններ, այնտեղ արդյունաբերական հիմքի վրա կենտրոնացնել կաթի ու մսի, բանջարեղենի ու բոստանային և այլ կուլտուրաների ապրանքային արտադրություն, գործը կազմակերպել այնպես, որ լայնորեն արմատավորելով գիտատեխնիկական նվաճումներն ու առաջավոր փորձը, կատարելագործելով աշխատանքի ձևերն ու մեթոդները, նվազ ծախսումներով՝ միավոր տարածությունից ստացվի ավելի շատ գյուղատնտեսական մթերք, զուգահեռաբար բավարարելով գյուղատնտեսական մթերքների նկատմամբ, մասնավորապես, արագ զարգացող մեր մայրաքաղաքի բնակչության հարաճուն պահանջմունքները:

Այո, ընկերնե՛ր, մենք պետք է Արարատյան դաշտի բնակլիմայական հնարավորությունները մեծ արդյունավետությամբ օգտագործենք: Դա ցավում է մանավանդ այն պատճառով, որ այս գոտու կուսակցական, սովետական ու տնտեսական օրգանները, կոլտնտեսություններն ու սովխոզները դեռևս հետևողական աշխատանք չեն տանում ցանքատարածություններից առավելագույնն ստանալու համար:

Այնինչ, գործը խելացի կազմակերպելու կամ պարզապես աշխատանքի հանդեպ փոքր-ինչ հոգատար մոտեցում ցուցաբերելու դեպքում այստեղ կարելի է իսկապես հարուստ հեկտար ունենալ, տարվա ընթացքում ապահովել երկրորդ, նույնիսկ՝ երրորդ բերքի ստացումը: Մենք կարող ենք և պարտավոր ենք Արարատյան բարեբեր դաշտը դարձնել գյուղատնտեսական մթերքների արտադրության իսկական շտեմարան:

Բերքատվության բարձրացման մյուս կարևորագույն լծակներն են ոռոգու-
մը և հողերի մելիորացումը։

Իռիգացիոն շինարարության ծավալման, ջրովի տարածությունների ավե-
լացման ուղղությամբ, ինչպես արդեն վերն ասվեց, մեզ մոտ որոշակի աշխա-
տանք կատարվել է։ Ներկայումս հանրապետության ջրային սակավ ռեսուրս-
ները հիմնականում օգտագործվում են գյուղատնտեսական նպատակներով։
Այնպես որ արվածը, իհարկե, քիչ չէ։ Բայց հենց այստեղ էլ ասենք, որ ավելի
մեծ գործերը դեռ առջևում են։

Գյուղատնտեսության հետագա զարգացման շահերը արդեն այսօր պահան-
ջում են առաջնային դարձնել հանրապետության բոլոր վարելահողերը մոտա-
կա մեկ-երկու հնգամյակների ընթացքում ոռոգելի դարձնելու անհետաձգելի
խնդիրը։

Պետք է մեկընդմիշտ հիշել, որ մեր հանրապետության պայմաններում
ոռոգումը ամեն տարի ցանքատարածություններից բարձր ու կայուն բերք
ստանալու հիմնական ու վճռական երաշխիքն է։ Այստեղից էլ հետևում է, որ
առաջադրված խնդրի լուծմանը պետք է մոտենալ ամենայն լրջությամբ ու հե-
տևողականությամբ։

Դա նշանակում է, որ մենք պարտավոր ենք ե՛լ ավելի մեծ թափով ծավա-
լել ջրաշինարարությունը, պատշաճ բարձրության վրա դնել հողերի մելիորաց-
ման աշխատանքները, լայնորեն արմատավորելով իռիգացիոն-ինժեներական
և տեխնիկական ժամանակակից նվաճումներն ու լուծումները։

Դա նշանակում է մանավանդ, որ մենք պետք է առավելագույն չափով օգ-
տագործենք ջրային ռեսուրսները, հատկապես մակերեսային հոսող ջրերը։
Հաշվարկները ցույց են տալիս, որ ամեն տարի հանրապետության հոսող ջրերի
6,7 միլիարդ խորանարդ մետրից, որն այնքան էլ շատ չէ, օգտագործվում է 2,4
միլիարդ խորանարդ մետրը, դրա միայն 75 տոկոսն է հատկացվում գյուղա-
տնտեսության կարիքներին։ Ստացվում է այնպես, որ մենք հոսող ջրերի ոչ
բոլոր պաշարներն ենք ի սպաս դնում ժողովրդական տնտեսության զարգաց-
մանը, ուստի և այս բնական հարստություններն ու ռեզերվները արդյունավետ
կիրառելու համար դեռևս շատ անելիքներ ունենք։

Մեզ թվում է, որ աշխատանքը պետք է ընթանա հետևյալ ուղիներով։
Մեզ թվում է, որ աշխատանքը պետք է ընթանա հետևյալ ուղիներով։

Առաջինը՝ անհրաժեշտ է գործն այնպես կազմակերպել, որպեսզի ջրաշի-
նարարական աշխատանքների նպատակը լինի առաջադրված գլխավոր խնդրի
լուծումը, այսինքն՝ բոլոր ոռոգելահարմար վարելահողերը ջրովի դարձվեն,
ինչպես նաև ոռոգվող տարածություններն ապահովվեն անհրաժեշտ քանակի
ջրով, իրացվեն նոր հողային զանգվածներ։

Հանրապետության ջրային սուղ ռեսուրսները արդյունավետ օգտագործելու
շահերից ելնելով, հարկավոր է առաջիկա տարիներին ե՛լ ավելի մեծ թափ
հաղորդել մեծ ու փոքր ջրամբարների կառուցմանը, մեծ ուշադրություն նվիրել
ջրահավաք ավազաններում ջրի կուտակմանը։

Այդ առումով առանձնահատուկ տեղ է հատկացվում Ախուրյանի ջրամբա-
րին, որի կառուցման աշխատանքները կսկսվեն այս տարվանից։ Ժողովրդա-
տնտեսական այդ խոշոր իռիգացիոն կառույցի նշանակությունը ցույց տալու
համար ասենք, որ նրա շահագործմամբ հնարավորություն կստեղծվի Շիրակի
ավազանում և նախալեռնային գոտու արևմտյան հատվածում, Թալինի ու Հոկ-
տեմբերյանի շրջաններում ոռոգելի դարձնել 22 հազար հեկտար նոր խոպան
հողեր, ինչպես նաև ամառային ջրով ապահովել 20 հազար հեկտար մշակվող
տարածություններ։

Արարատյան դաշտի աղուտների և գերխոնավ հողերի իրացման պրոբլեմի
հետ մեկտեղ սա մեր ամենախոշոր ռեզերվն է։

Պակաս կարևոր նշանակություն չունի նախալեռնային գոտում, մասնա-
վորապես Նաիրիի և Աշտարակի շրջաններում իրացված հողային զանգվածները
գյուղատնտեսական շրջանառության մեջ դնելու, այնտեղ նոր տնտեսություններ
կազմակերպելու, խաղողի և պտղի արտադրությունն ավելացնելու նպատակով
Հրազդան գետի վրա կառուցվելիք նոր ջրամբարը։ Այն ոռոգելի կդարձնի ընդ-



հանուր առմամբ 20 հազար հեկտար հողատարածություն, միաժամանակ բա-
վարարելով Էջմիածնի շրջանի տնտեսությունների ջրի պահանջը։

Այստեղ կա նաև հարցի մյուս կողմը։ Եթե շատ տեղերում յուրացված տա-
րածությունները չեն օգտագործվում ջրի սակավության պատճառով, ապա մի
շարք շրջաններում, չնայած ջուրը տեղ է հասել, բայց հողերը դեռ նախապատ-
րաստված չեն այն ընդունելու։ Ստացվում է այնպես, որ հսկայական միջոց-
ների գնով, տարիների աշխատանքով ստեղծված ջրային պաշարները զանա-
զան պատճառներով անգործության են մատնվում։ Եվ դա տեղի է ունենում մեր
սակավահող, սակավաջուր հանրապետության պայմաններում։

Հանրապետությունում ջրային պրոբլեմի լուծման երկրորդ ուղին նրա ար-
դյունավետ օգտագործումն է։

Եթե մի կողմ թողնենք ոռոգման աշխատանքների դեռևս անբավարար
կազմակերպումը, այս գործում մեքենայացման խիստ ցածր աստիճանը, որոնք
ինքնին անհանդուրժելի են, ապա ջրի զգալի կորուստներ են առաջանում ջրա-
տար սիստեմների անսարքությունից։ Մոտավոր հաշվումներով ջրի միայն
կեսն է փաստորեն հասնում ցանքերին։ Ներկայումս ջրի օգտակար գործողու-
թյան գործակիցը հանրապետությունում կազմում է 0,56։ Եթե մեզ հաջողվի
մոտակա ժամանակաշրջանում այդ ցուցանիշը հասցնել թեկուզ 0,7-ի, ապա
ամեն տարի կարող ենք լրացուցիչ ունենալ 300 միլիոն խորանարդ մետր ջուր,
որը հնարավորություն կտա ոռոգման ենթարկելու 30 հազար հեկտար հողա-
տարածություններ։

Սա ջրաշինարարության ասպարեզում մեր առջև դրված լուրջ խնդիրներից
է, որի լուծման նպատակով պետք է ծավալվի ծրագրված, նպատակասլաց,
հետևողական աշխատանք։

Հողի արդյունավետ օգտագործումն ապահովելուն զուգընթաց, հանրապե-
տության կուսակցական, սովետական, գյուղատնտեսական օրգանները, պլա-
նավորող կազմակերպությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները
պարտավոր են ըստ ամենայնի ծավալել հողերի մելիորացման աշխատանք-
ները, հետևողականորեն բարձրացնել ջրովի երկրագործության կուլտուրան,
միջոցներ ձեռնարկել ջրատար սիստեմների տեխնիկական վիճակի բարելավ-
ման, փակ դրենաժների կառուցման, անձրևացման, կաթիլային ջրման ու ոռոգ-
ման կազմակերպման ժամանակակից մյուս առաջադիմական եղանակների
արմատավորման ուղղությամբ։

Ընկերնե՛ր։ Գյուղատնտեսության ասպարեզում ծառացած առաջիկա մեծ
խնդիրների հաջող լուծումը, հողագործության և անասնապահության վարման
կուլտուրայի բարձրացումը, հողերի մելիորացման հետագա զարգացումը, վեր-
ջապես արտադրության ինտենսիվացումը հնարավոր չէ պատկերացնել առանց
աշխատատար պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, առանց ժո-
ղովրդատնտեսական այդ կարևորագույն ճյուղում գիտատեխնիկական առաջա-
դիմության արագացման։

Ճիշտ է, մեզանում որոշակի աշխատանք կատարվում է գյուղատնտեսա-
կան արտադրության մեքենայացման ուղղությամբ, կոլտնտեսություններն ու
սովխոզները, ինչպես արդեն ասվեց, սիստեմատիկաբար զինվում են հայրե-
նական արտադրության առաջնակարգ տեխնիկայով, ավելի կատարելագործ-
ված ու բարձրարտադրողական մեքենաներով ու սարքավորումներով։ Բայց եթե
գործին մոտենանք կուսակցության ներկա պահանջների բարձրությունից, ապա
կատարվող աշխատանքը տակավին հեռու է բավարար լինելուց։

Դեռևս ցածր է գյուղատնտեսական արտադրության մեքենայացման մա-
կարդակը։ Այսպես, խաղողագործության և պտղաբուծության մշակության աշ-
խատանքները, օրինակ, մեքենայացված են ընդամենը 20—25, ծխախոտա-
գործությունը՝ 15 տոկոսով, իսկ բանջարաբուծության, ճակնդեղագործության,
կարտոֆիլի և խորդենու արտադրության մեջ բացի նախացանքային և միջշա-
րային մշակությունից, մնացած բոլոր աշխատանքներն առայժմ կատարվում
են ձեռքով։

Վիճակն անբավարար է անասնաբուծության ասպարեզում։ Եթե այս բնա-

գավառի կոմպլեքսային մեքենայացման աստիճանը երկրում կազմում է 14 տոկոս, ապա մեզ մոտ այն հասնում է ընդամենը 5,7 տոկոսի, կովերի մեքենայական կիթը հանրապետության տնտեսություններում կազմում է 17,8 տոկոս, երբ միութենական միջինը հավասար է մոտ 70 տոկոսի:

Բայց դա գործի միայն մի կողմն է: Բանն այն է, որ տեղադրված ագրեգատներն ու սարքավորումներն էլ խիստ անբավարար են օգտագործվում: Այսպես, կոլտնտեսություններում և սովխոզներում տեղադրված մեքենայական կթի 21, կերաբաշխիչների 20 տոկոսը փաստորեն անգործության են մատնված: Այդ առումով հատկապես վատ է վիճակը Աբովյանի, Արարատի, Արտաշատի և մի քանի այլ շրջաններում:

Հանրապետության շատ տնտեսություններ թերակատարում են պլանային առաջադրանքները, ցածր են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, անասունների մթերատվությունը, աշխատանքի արտադրողականությունը, բարձր է արտադրվող մթերքների ինքնարժեքը: Իսկ ինչպե՞ս կարող են արտադրության որակական ցուցանիշները բարձր լինել, եթե ագրոտեխնիկական միջոցառումները լավագույն ժամկետներում չեն կատարվում, անբավարար է կազմակերպվում անասունների խնամքն ու կերակրումը, չեն պահպանվում անասնաբուժական-անասնաբուժական տարրական կանոնները, վերջապես, պատշաճ ուշադրություն չի նվիրվում գյուղատնտեսական արտադրության աշխատատար պրոցեսների համակողմանի մեքենայացմանը:

Այստեղ մեղքի իրենց բաժինն ունեն կուսակցության շրջկոմներն ու սովետական օրգանները, գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկայի» միավորումը, հանրապետական մյուս գերատեսչությունները, որոնք ծրագրված, նպատակասլաց տեխնիկական քաղաքականություն չեն իրագործում, հետևողական գործ չեն կատարում հատկապես ծանր աշխատատար պրոցեսների մեքենայացման, ձեռքի աշխատանքի թեթևացման, գյուղատնտեսության առաջատար ճյուղերը աստիճանաբար կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման ենթարկելու բնագավառում:

Նրանք պետք է կարճ ժամանակում մշակեն և քննարկման ներկայացնեն գյուղատնտեսության հետագա մեքենայացման աշխատանքների կազմակերպումը բարելավելու միջոցառումներ, որոնք ուղղված լինեն տնտեսությունների մեքենատրակտորային պարկերի արդյունավետության, մեխանիզմների, ագրեգատների ու սարքավորումների արտադրողականության բարձրացմանը, տեխնիկայի լավագույն օգտագործմանը: Ըստ երևույթին, հարկ կլինի «Հայգյուղտեխնիկայի» միավորման սիստեմում կազմակերպել վարձույթային ջոկատներ, որոնք մեքենաներով և ագրեգատներով կսպասարկեն փոքր տնտեսություններին, առաջին հերթին, տնտեսապես և տեխնիկապես թույլ տնտեսություններին:

Կոլտնտեսային և սովխոզային արտադրության տեխնիկական վերազինման գործում վճռական դերը, վերջին հաշվով, պատկանում է կադրերին, գյուղատնտեսության մասնագետներին: Այդ նրանք են, որ պետք է ճանապարհ հարթեն նորի ու առաջավորի համար: Այնինչ, քիչ չեն փաստերը, երբ բազմաթիվ կոլտնտեսությունների, սովխոզների, նույնիսկ շրջանային առանձին օրգանների որոշ աշխատողներ թերահավատորեն են վերաբերվում նոր մեխանիզմների ներդրմանը, կառչում պապենական մեթոդներից, երես են դարձնում ժամանակի պահանջներին համընթաց քայլելուց, դրանով իսկ արգելակում արտադրության առաջընթացը:

Հանրային արտադրության մեջ գիտատեխնիկական պրոգրեսի արագացման ոլորտում մեծ անելիքներ ունեն գյուղական մեխանիզատորները: Արտադրության իսկական մասնագետը նա է, ով ոչ միայն հետամուտ է լինում գիտության ու տեխնիկայի սրընթաց վազքին, այլև կրքոտ կերպով պայքարում է նորույթի ներդրման, պրակտիկայում օրեցօր ծնվող առաջադիմականի լայն արմատավորման համար: Պետք է բոլոր միջոցները ձեռնարկել է՛լ ավելի բարձրացնելու գյուղատնտեսական արտադրության կազմակերպման գործում մեխա-



նիզատորների դերն ու պատասխանատվությունը, գիտատեխնիկական առաջադիմության արագացման պայքարում նրանց ակտիվությունը:

Հանրային արտադրության մեջ գյուղական մեխանիզատորը որոշիչ դեմք է: Ուստի և նա պետք է ամենուրեք շրջապատված լինի ամենօրյա հոգատարությամբ և միշտ գտնվի ուշադրության կենտրոնում: Ցավով պետք է ասել, որ ոչ բոլոր տեղերում է այդպես:

Գյուղատնտեսության ինտենսիվացման բաղկացուցիչ մասը հողերի համակողմանի քիմիացումն է:

Ներկայումս հանքային պարարտանյութերը բավարարում են տեխնիկական, բանջարանոցային, հացահատիկային կուլտուրաների, այգիների պարարտացման պահանջմունքները: Վերջին տարիներին որոշակի աշխատանք է կատարվում նաև կերային կուլտուրաների, արոտավայրերի և խոտհարքների պարարտացման ուղղությամբ: Պրակտիկան ցույց է տալիս, որ այնտեղ, ուր բանիմացորեն են օգտագործվում հանքային և օրգանական պարարտանյութերը, ճիշտ են կիրառվում հերբիցիդները, բուժանյութերը և քիմիական մյուս միջոցները, միավոր տարածությունից ստանում են բարձր բերք:

Սակայն այս գործում ևս քիչ չեն բացերն ու թերությունները: Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա ագրոքիմիական ծառայության օղակները դեռևս նպատակասլաց աշխատանք չեն տանում հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում համակողմանի քիմիացման խնդիրները պատշաճ մակարդակով լուծելու համար:

Ոչ քիչ տնտեսություններում հարկ եղած ուշադրություն չի նվիրվում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների պարարտացմանը, իսկ արոտավայրերի և մարգագետինների պարարտացումը շատ տեղերում պարզապես ավելորդ գործ են համարում: Բավական է նշել, որ ներկայումս արոտների և մարգագետինների ընդհանուր տարածության միայն 33 տոկոսն է պարարտացվում: Միանգամայն անբավարար են օրգանական պարարտանյութերի պահպանումն ու օգտագործումը:

Կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ համակողմանի քիմիացման դրվածքը բարելավելու, այն գիտական հիմունքներով վարելու, բույսերի հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարն ուժեղացնելու, գյուղատնտեսության ինտենսիվացման կարևոր լծակներից մեկի՝ քիմիացման ուղղությամբ միասնական գիծ վարելու նպատակով անհրաժեշտ ենք համարում ստեղծել նոր ծառայություն՝ ագրոքիմիական կենտրոն, նրա վրա դնելով նշված բոլոր աշխատանքների ապահովման պարտականությունները:

Այդ հարցը պետք է խորությամբ ուսումնասիրել ու ներկայացնել ՀԿԿ Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի քննարկմանը:

Հարկավոր է ընդմիշտ հիշել, որ գյուղատնտեսական արտադրության համակողմանի քիմիացումը, հանքային և օրգանական պարարտանյութերի խելացի օգտագործումը հողի բերրիության և կուլտուրաների բերքատվության բարձրացման կարևոր գործոններն են, ուստի և պետք է գտնվեն կուսակցական, սովետական և գյուղատնտեսական օրգանների, կոլտնտեսությունների ու սովխոզների ուշադրության տեսադաշտում:

Այդ ամենից բացի, անհրաժեշտ է հետևողական աշխատանք տանել ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսի կիրառման ոլորտում, արմատապես բարելավել սերմնաբուծության, բարձր բերքատու սորտերի ներդրման գործը, յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի համար կազմել և իրականացնել ցանքաշրջանառությունների համապատասխան սխեմ, պատշաճ բարձրության վրա դնելով երկրագործության վարման կուլտուրան:

Ընկերնե՛ր:

Հանրապետության կուսակցական, սովետական ու գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման, գյուղատնտեսական

Այդ կառույցներում աշխատանքների ձախողման մեղքն ընկնում է, առաջին հերթին, պլանավորող օրգանների և հատկապես գյուղատնտեսության մինիստրության վրա:

Լուրջ թերություններ կան ջերմատների, պտղապահեստների, համակցված կերերի արտադրության ձեռնարկությունների կառուցման աշխատանքներում: Հատկացված կապիտալ միջոցներն անբավարար են իրացվում նաև այգեգործության մեջ, հողերի հակաէրոզիոն և կուլտուր-տեխնիկական միջոցառումներում, կուլտուր-կենցաղային շինարարության և այլ բնագավառներում:

Հասկանալի է, որ հողի, ջրի, տեխնիկայի, մյուս արտադրամիջոցների անբավարար օգտագործումը, կապիտալ միջոցների իրացման պլանների թերակատարումը, հիմնական նոր ֆոնդերի գործարկման ժամկետների ձգձգումը, կոլտնտեսություններում ընդլայնված վերարտադրության համար ֆինանսական աննշան գումարների տրամադրումը՝ այդ ամենը խանգարում են կոլտնտեսությունների և սովխոզների արտադրության հետագա աճի ապահովմանը, դրանց տնտեսական դրության ամրապնդմանը և սոցիալ-տնտեսական մյուս պրոբլեմների պատշաճ լուծմանը: Եվ եթե դրան ավելացնենք նաև շատ տեղերում տիրող անտնտեսվարությունը, հավելագրումների, անարտադրողական ծախսերի փաստերը, ապա միանգամայն պարզ կդառնա, թե ինչու զգալի թվով տնտեսություններ ներկայումս գտնվում են ֆինանսական անբավարար դրության մեջ, հետևապես և չեն կարող կատարել իրենց առջև ծառացած արտադրական խնդիրները:

Ընկերնե՛ր: Կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1973 թվականի դեկտեմբերյան պլենումը նշեց, որ արդի ժամանակաշրջանում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացումը պայմանավորված է այդ ճյուղի հետևողական մասնագիտացմամբ, կենտրոնացմամբ, այն ինդուստրիալ հիմքերի վրա փոխադրմամբ, արտադրության մեջ գիտատեխնիկական առաջադիմության արագացմամբ:

Նշված խնդիրների լուծման գլխավոր ուղղությունները պարզ ու հստակ շարադրված են Ալմա-Աթայում խոպանի յուրացման 20-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառի մեջ, որտեղ մասնավորապես ասված է.

«Նյութատեխնիկական բազայի ամրապնդման շնորհիվ գյուղատնտեսությունը թևակոխում է զարգացման նոր փուլ, ավելի ու ավելի մեծ չափով է փոխադրվում ինդուստրիալ հիմքի վրա: Արտադրողական ուժերի մեջ կատարվող այս որակական տեղաշարժը իր հերթին պահանջում է արտադրական հարաբերությունների կատարելագործում, հանրայնացման պրոցեսների ուժեղացում, աշխատանքի բաժանում: Ի՞նչ է նշանակում սա: Արտադրության բազմաճյուղ, մասնատված կառուցվածքի մինչև օրս պահպանված գծերը, որոնք ժառանգություն են մնացել անցյալից, կասեցնում են գիտատեխնիկական վերազինման պրոցեսը, արգելակում գյուղատնտեսության ինտենսիվացումը, ուստի, արտադրության հետագա մասնագիտացումը և կենտրոնացումը, միջտնտեսային կոոպերացիայի խորացումը ներկայումս երկրի գյուղատնտեսության զարգացման կենսական, արմատական հարցերն են դառնում»:

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումի պահանջներին համապատասխան, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառի լույսի տակ, մենք պետք է այսօր կշռադատված ու մտածված միջոցներ որոնենք գյուղատնտեսության ճյուղերի մասնագիտացման, խորացման, հողագործական և անասնապահական մթերքների ապրանքային արտադրության մեծացման ուղղությամբ:

Իսկ պրակտիկայում իրենց արդարացրած ի՞նչ լուծումներ կան, որ կարելի էր զարգացնել կամ ընդօրինակել: Դրանք նախ և առաջ միջկոլտնտեսային և միջտնտեսային կազմակերպություններն են, որոնք հնարավորություն են տալիս խորացնելու արտադրության մասնագիտացումը, կենտրոնացումը, ավելի արդյունավետ օգտագործելու տեխնիկան, մյուս արտադրամիջոցները, նվազագույն ծախսումներով ստանալու ավելի շատ արտադրանք:

Դա հիմնավորվում է հենց մեր հանրապետության փորձով:



Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային խոզաբուծական ֆաբրիկայում, օրինակ, խոզերի գլխաքանակը կազմում է 2.600, մսի տարեկան արտադրությունը 2.300 ցենտներ է, մեկ մայր խոզի հաշվով ստացվել է 11,4 գլուխ խոճկոր և 10,7 ցենտներ միս, աշխատանքային ծախսումները մեկ ցենտներ մսի համար կազմում են 2,8 մարդ-օր, մեկ ցենտների ինքնարժեքը 143 ռ. 80 կոպեկ է:

Մինչդեռ կոլտնտեսություններում յուրաքանչյուր խոզաբուծական ֆերմա միջին հաշվով արտադրել է ընդամենը 141 ցենտներ, սովխոզներում՝ 180 ցենտներ միս: Մսի ինքնարժեքը կոլտնտեսություններում հասնում է 201, սովխոզներում՝ 292 ռուբլու: Մեկ մայր խոզի հաշվով կոլտնտեսություններում ստացվել են 7,4 գլուխ խոճկոր և 8,1 ցենտներ միս, մեկ ցենտներ մսի վրա ծախսվել է 9,6 մարդ-օր:

Ինչպես տեսնում ենք, միջտնտեսային մասնագիտացված կազմակերպությունների առավելություններն ակնհայտ են:

Ելնելով հանրապետության հնարավորություններից ու առանձնահատկություններից՝ մենք կարող ենք և պետք է մի խումբ տնտեսությունների ֆինանսական, նյութատեխնիկական և աշխատանքային ռեսուրսները կամավոր սկզբունքների հիման վրա միավորենք և ծառայեցնենք արտադրության հանրայնացման խորացմանը, առանց որի խոսք չի կարող լինել արտադրության իսկական կենտրոնացման, ինտենսիվացման և արդյունաբերական հիմքերի վրա նրա հետագա փոխադրման մասին:

Դա առաջին պլան է մղում տնտեսությունների լայն կոոպերացման բազայի վրա միջտնտեսային մասնագիտացման խնդիրը, որի լուծումը հնարավորություն կտա ստեղծելու ինդուստրիալ տիպի խոշոր և մասնագիտացված ձեռնարկություններ:

Առաջնորդվելով ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ճառում առաջադրված գործնական խնդիրներով, ներկայումս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը ծրագրում են լայն աշխատանք կատարել միջկոլտնտեսային, միջտնտեսային մասնագիտացված անասնապահական, այգեգործական ձեռնարկությունների, մասնագիտացված սովխոզ-գործարանների ստեղծման ուղղությամբ:

Նախատեսվում է հանրապետությունում կազմակերպել մոտ 75 միջկոլտնտեսային և կոլտնտեսային-սովխոզային ձեռնարկություններ՝ տոհմային երինջների աճեցման, խոշոր եղջերավոր անասունների մատղաշի ինտենսիվ աճեցման և բտման, խոզագիրացման, կաթի, համակցված կերի արտադրության, պտղի վերամշակման նպատակով, թռչնաբուծական ֆաբրիկաներ, մեղվաբուծական, ջերմոցային տնտեսություններ և այլն:

Հավանաբար ճիշտ կլինի հենց այժմյանից ձեռնամուխ լինել Երևան, Լենինական, Կիրովական քաղաքների և մյուս արդյունաբերական կենտրոնների շրջակայքում կազմակերպելու բանջարաբուծական և կաթնամթերքային մասնագիտացված տնտեսություններ:

Առաջիկայում անհրաժեշտ է մտածել նաև ոչխարի ինտենսիվ աճեցման և բտման, շինանյութերի, կոնստրուկցիաների արտադրության, գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման, սերմնաբուծության, ագրոքիմիական ծառայության, հողերի մելիորատիվ և կուլտուր-տեխնիկական աշխատանքների կատարման նպատակով համապատասխան կազմակերպությունների ստեղծման մասին:

Հնարավոր է և չի բացառվում, որ միջտնտեսային ձեռնարկությունների գործունեությանը մասնակից դառնան նաև անտառային և ջրային տնտեսությունների, «Գյուղտեխնիկայի» միավորման, սննդի և արդյունաբերական ուրիշ ձեռնարկություններ, այսինքն՝ ստեղծվեն մոտավորապես այնպիսի արտադրական միավորումներ, որոնց նախատիպերը, այսպես կոչված ագրո-արդյունաբերական կոմպլեքսները, ներկայումս գործում են, օրինակ, Ռուսաստանյան Ֆեդերացիայում, Մոլդավիայում, Ուկրաինայում և այլուր:

Գյուղատնտեսության մեջ ագրո-արդյունաբերական կոմպլեքսների ծնուն-

քարի հետ անհամատեղելի են անփութությունը, թափթփվածությունը, գործի նկատմամբ անտարբեր վերաբերմունքը:

Ահա թե, ընկերնե՛ր, ի՞նչ ուղիներով պետք է ապահովել աշխատավորական կոլեկտիվների արդյունավետ գործունեությունը, հանրային արտադրության վերելքը, աշխատավորների ջանքերն ուղղել պլանային առաջադրանքների և մրցությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմանը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման համաձայն ներկայումս կուսակցության շրջկոմների, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունների առջև ծառացած կարևորագույն խնդիրն է՝ միջոցներ ձեռնարկել է՛լ ավելի ծավալելու սոցիալիստական մրցությունը հանրային արտադրության բոլոր տեղամասերում, կազմակերպական, քաղաքական-դաստիարակչական ու մասսայական աշխատանքն ուղղել կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մասնագետների արտադրական ակտիվության բարձրացմանը, նրանց ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը, հմտորեն զուգակցելով նյութական շահագրգռվածության սկզբունքները մասսաների բարոյական խթանման գործոնների հետ:

Շատ կարևոր է, որպեսզի կուսակցության շրջկոմները, տնտեսությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունները հատուկ ուշադրություն նվիրեն սոցիալիստական մրցության արդյունքների համադրելիության և հրապարակայնության ապահովմանը, մրցողների համար բարենպաստ պայմանների ստեղծմանը:

Գյուղի աշխատավորների հայրենանվեր գործերը պետք է մշտապես արտացոլվեն մամուլի էջերում, ռադիոյի և հեռուստատեսության ծրագրերում: Սիստեմատիկաբար լուսաբանելով գյուղի աշխատավորների շրջանում ծավալվող մրցության ընթացքը՝ նրանք պարտավոր են, ինչպես ասում են, խոշոր պլանով ներկայացնել արտադրության նորարարներին, պրոպագանդել նորն ու առաջադիմականը, հասնել այն բանին, որ ուսանելի փորձը կարճ ժամանակում դառնա բոլորի սեփականությունը, արմատավորվի գյուղատնտեսական արտադրության մեջ:

Անհրաժեշտ է կազմակերպական, գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բոլոր միջոցներով գյուղի աշխատավորներին հասցնել ընթացիկ տարվա առաջադրանքների, ամբողջ հնգամյա պլանի անթերի կատարման իմաստն ու նշանակությունը երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքն ապահովելու գործում: Ոչինչ չպետք է խնայել այն բանի համար, որպեսզի գյուղի յուրաքանչյուր աշխատավոր, արտադրության յուրաքանչյուր մասնագետ գտնի իր տեղն ու դերը հնգամյակի համար մղվող պայքարում:

Նոր հասարակարգի կառուցման ոլորտում կուսակցության քաղաքական կուրսի բաղկացուցիչ մասը կազմող նրա ագրարային քաղաքականության հարցերը այսօր հսկայական նշանակություն են ստանում:

Մեր առաջնահերթ խնդիրն է՝ հետևողականորեն պայքարել արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման համար, այն քաղաքականության, որն ապահովում է գյուղատնտեսության կայուն վերելքը, գյուղատնտեսական աշխատանքի բնույթի, գյուղի բուն իսկ նկարագրի վերափոխումը:

Գյուղատնտեսության ինտենսիվացումը համաժողովրդական գործ է: Այստեղ իրենց մեծ անելիքներն ունեն նաև հանրապետության բանվոր դասակարգը և ինտելիգենցիան: Նրանք պետք է բոլոր միջոցներով նպաստեն արտադրության տեխնիկական վերազինմանը, նրա որակական ցուցանիշների բարձրացմանը, գյուղի աշխատավորների հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը:

Հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորները մեծ ոգևորությամբ կյանքի են կոչում կուսակցության նախագծած պլանները: Նրանք լավ են գիտակցում, որ այժմ գյուղատնտեսական աշխատանքների ամենաեռուն, ամենապատասխանատու շրջանն է, որ 1974 թվականը բաս



էության որոշելու է, թե մենք աշխատանքային ինչպիսի արդյունքներով կթևակոխենք հնգամյակի եզրափակիչ տարին:

Գարնանացանին, գյուղատնտեսական կուլտուրաների մշակությանն ու անասնապահության մսուրային շրջանի ավարտմանը զուգընթաց, հանրապետության կուսակցական, սովետական, գյուղատնտեսական, արհմիութենական ու կոմերիտական օրգանները, կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավոր են, ելնելով «1974 թվականի բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների ապահովման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի օրերս հրապարակված որոշման պահանջներից, ձեռնարկել բոլոր միջոցները՝ ապահովելու այս տարվա բերքահավաքի անկորուստ անցկացումը, անհրաժեշտ քանակությամբ կերի կուտակումը, պետությանը հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների վաճառքի ժողովրդատնտեսական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարումն ու գերակատարումը:

Հարկավոր է հանրային ունեցվածքի պահպանման գործը պատշաճ բարձրության վրա դնել, է՛լ ավելի ուժեղացնել չարաշահումների ու հափշտակումների դեմ մղվող պայքարը:

Ընկերնե՛ր: Սովետական մարդիկ, աշխատանքային ու քաղաքական վիթխարի վերելքի պայմաններում, գնում են դեպի սոցիալիստական մեր մեծ հայրենիքի պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները: Գերագույն սովետի ընտրությունները կվերածվեն սոցիալիստական դեմոկրատիայի նոր մեծ հաղթահանդեսի, կցուցադրեն կոմունիստական կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը, կոմունիզմի ուղիով աներեր ընթանալու նրանց վճռականությունը:

Սովետական մարդիկ քաջ գիտեն, որ կուսակցության արտաքին քաղաքականության հաջողությունները, վերջին հաշվով, պայմանավորված են տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում նրանց ձեռք բերած նվաճումներով:

Սովետական ժողովուրդը միահամուռ կերպով պաշտպանում և ջերմ հավանություն է տալիս միջազգային ասպարեզում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոյի վարած հաստատակամ կուրսին, անձամբ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի վիթխարի ջանքերին, որոնք ուղղված են աշխարհի խաղաղության ամրապնդման և ժողովուրդների անվտանգության ապահովման նպատակին, սովետական մարդկանց արդյունավետ աշխատանքի համար արտաքին քաղաքական առավել նպաստավոր պայմանների ստեղծման նպատակին:

Թույլ տվեք, ընկերնե՛ր, ձեր անունից, հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների անունից, հավաստիացնել Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեին, որ մենք ջանք ու եռանդ չենք խնայի հաջողությամբ իրականացնելու Ալմա-Աթայում ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ճառում առաջադրված խնդիրները, հետևողականորեն նվաճելու հնգամյակի ընթացիկ տարվա բարձր բնագծերը, անշեղորեն կենսագործելու ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները, արժանի ավանդ ներդնելու մեր երկրում կոմունիզմի կառուցման վեհ գործում: (Բուռն ծափահարություններ):

# ՀԱՆՈՒՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ

Կոմունիստական կուսակցության գաղափարական-քաղաքական գործունեության բովանդակության համար միշտ էլ բնութագրական են եղել այնպիսի արմատական խնդիրներ, ինչպիսիք են՝ աշխատավորների ամենալայն զանգվածների հեղափոխական, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը, կոմունիստական բարոյականության արմատավորումը, աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ գիտակցական վերաբերմունքի դաստիարակումը, կոմունիզմ կառուցող անհատի բազմակողմանի զարգացումը:

Գաղափարական այս կամ այն խնդիրը լուծելիս, կուսակցությունը, ելնելով իր ստրատեգիական սկզբունքային դիրքից, միշտ էլ հաշվի է առել տվյալ ժամանակահատվածի հատկանշական պայմանները: Ելակետը նույնն է նաև այսօր:

Ներքին զարգացման առումով ՍՄԿԿ XXIV համագումարին նախորդած շրջանը նշանավորվեց մեր երկրում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության քաղաքական ու աշխատանքային ակտիվության հետագա աճով, ժողովուրդների բարեկամության, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության առավել ամրապնդմամբ: Ժամանակակից գաղափարա-քաղաքական մթնոլորտին բնորոշ են սովետական մարդկանց սոցիալիստական գիտակցության բարձր մակարդակը, ինտերնացիոնալիզմը, հայրենասիրությունը, նրանց համազգային հպարտության ու դասակարգային արժանապատվության զգացումի խորացումը:

Արտաքին պայմանների առումով ևս ներկա ժամանակաշրջանը բնութագրվում է իր առանձնահատկություններով: ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի հետևողական կենսագործումը հանգեցրեց դրական ակներև տեղաշարժերի՝ միջազգային կյանքում: Անցյալի գիրկն է անցնում «սառը պատերազմի», «սոցիալիզմը ետ մղելու» տխրահռչակ քաղաքականությունը: Դրան փոխարինելու է գալիս տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության, տնտեսական մրցության քաղաքականությունը՝ փոխադարձ օգտավետության հիման վրա: Այդ կարևոր տեղաշարժերը կատարվել են կուսակցության Կենտկոմի, սովետական կառավարության, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի եռանդուն, հետևողական ջանքերի ու գործունեության շնորհիվ:

Ինչպես մեր երկրում կոմունիզմի կառուցման խնդիրներից, այնպես էլ համաշխարհային ասպարեզում ստեղծված նոր իրադրությունից ելնելով՝ հարկ է բարձրացնել աշխատավորների կոմունիստական դաստիարակության, առհասարակ կուսակցության գաղափարա-քաղաքական ողջ գործունեության մակարդակը, ավելի բանիմաց ու արդյունավետ կիրառել կուսակցական պրոպագանդայի արվեստը: Իսկ սա նշանակում է՝

— մեր նպատակների ու իդեալների պրոպագանդան և տեսական դրույթները առավել խոր ու հիմնավոր կապակցել այն անմիջական գործնական ու քաղաքական խնդիրների հետ, որոնք լուծում են կուսակցությունն ու սովետական ժողովուրդը:

— բազմակողմանի զարգացնել մասսաների սոցիալական ակտիվությունը, նրանց ավելի լայնորեն ընդգրկել հասարակական գործունեության ոլորտը և այդ հիման վրա սովետական մարդկանց դաստիարակել աշխա-



տանքային կոլեկտիվի և ողջ հասարակության գործերի վիճակի համար խոր պատասխանատվության, գոյություն ունեցող թերությունների նկատմամբ անհանդուրժողականության ոգով.

— արմատապես բարելավել կուսակցական ինֆորմացիայի գործը, բնակչության բոլոր խավերին մշտապես տեղեկացնել կուսակցության ու պետության քաղաքական գործունեության, կենտրոնում և տեղերում կառավարման օրգանների աշխատանքի առավել կարևոր հարցերի մասին, ապահովել վերից վար և վարից վեր անխափան ինֆորմացիան.

— առավել ակտիվացնել մեր գաղափարա-քաղաքական հարձակումը դասակարգային հակառակորդների դեմ, քննադատել կապիտալիստական սիստեմը, բուրժուական գաղափարախոսությունը, բարոյականությունը, կուլտուրան, ապրելակերպը, մերկացնել թշնամական պրոպագանդայի փաստարկների կեղծությունը, մշտապես հիշելով, որ տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության պայմանը բնավ էլ գաղափարախոսական, դասակարգային պայքարի դադարեցում չէ, ընդհակառակը, նոր պայմաններում առաջին բնագիծ է մղվում գաղափարական սուր բախումը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում:

***

Մեր հանրապետության կուսկազմակերպությունները, խորապես գիտակցելով մարքս-լենինյան տեսական գիտելիքների կարևորությունը թե՛ հասարակության գիտական կառավարման ու նյութական արտադրության ոլորտում և թե մարդկանց հոգևոր կյանքի բազմակողմանի զարգացման ասպարեզում, ամեն ինչ անում են, որպեսզի աշխատավորության լայն զանգվածները խորությամբ տոգորվեն մարքս-լենինյան աշխարհայացքով, ինչպես հարկն է իրազեկ լինեն կուսակցության գաղափարախոսական գործունեության նվաճումներին:

Այդ նվաճումներից են՝ զարգացած սոցիալիզմի տեսական պրոբլեմների ուսումնասիրությունը, հիմնավորումն ու բնորոշումը՝ կոմունիզմի էության ու կառուցման ուղիների վերաբերյալ լենինյան դրույթների հետագա խորացման հիման վրա: Առանձնահատուկ, կարելի է ասել, կենսական նշանակություն ունի արտադրության արդյունավետության բարձրացման, կառավարման ու պլանավորման կատարելագործման, ագրարային քաղաքականության իրականացման ուղիների ու մեթոդների հետ կապված հարցերի գիտական մշակումը, այլ խոսքով՝ այն բոլոր հարցերի, որոնց նպատակն է մեր ժողովրդական տնտեսության համակողմանի զարգացումը գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում:

ՍՄԿԿ XXIV համագումարի և կուսակցության Կենտկոմի պլենումների փաստաթղթերում, Լ. Ի. Բրեժնևի ելույթներում, մանավանդ **ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին** զեկուցման մեջ խորապես վերլուծված են սովետական հասարակության սոցիալական կյանքի տարբեր կողմերը, ինչպես, օրինակ, սոցիալ-դասակարգային կառուցվածքի փոփոխությունը, բանվոր դասակարգի առաջատար դերի աճը, նրա և կոլտնտեսային գյուղացիության ու ժողովրդական մտավորականության դաշինքի ամրապնդումը, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացումը, սոցիալիստական պետականության ու դեմոկրատիայի զարգացումը, կոմունիստական բարոյականության և կուլտուրայի ձևավորումը, հասարակական բարձր գիտակցականության դրսևորումը և այլն:

Կուսակցությունը տեսականորեն հիմնավորեց մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորման ու զարգացման մասին դրույթը, որպես մեր երկրում սոցիալ-քաղաքական կեսդարյա փոփոխությունների ընդհանրացված հանրագումար:

Կուսակցության տեսական բեղուն գործունեության շնորհիվ, քաղաքային ու շրջանային շատ կոմիտեներ հաջողությամբ են վարում մասսաների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, գաղափարական դաստիարակության,

նրանց քաղաքական գիտակցականության բարձրացման գործը՝ ապահովելով
աշխատավորության կողմից կուսակցության քաղաքականության խոր ըմբռ-
նումն ու պաշտպանությունը:

Կուսկազմակերպությունների գաղափարա-դաստիարակչական աշխա-
տանքի արդյունավետության ապացույց են երկրի տնտեսության արագ վե-
րելքը, ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը, նրա սոցիալ-քաղա-
քական ակտիվության աճը: Մեր հանրապետության աշխատավորությու-
նը պատվով դուրս եկավ 1973 թվականի տնտեսական տարվա դժվա-
րին քննությունից. կատարվեցին արդյունաբերական ու գյուղատնտե-
սական արտադրանքի շատ տեսակների սոցիալիստական պարտավորություն-
ները: Ժողտնտեսության մեջ հաջող են ընթանում գործերը նաև ընթացիկ տա-
րում: Նախնական տվյալները վկայում են, որ կիսամյակի առաջադրանքները
կգերակատարվեն: Զգալիորեն աճել են արդյունաբերական արտադրության
տեմպերը, նախորդ տարվա համեմատությամբ բարձրացել է աշխատանքի
արտադրողականությունը:

Հայաստանի աշխատավորությունը, սովետական ողջ ժողովրդի հետ մեկ-
տեղ, մի անգամ ևս ցուցադրեց իր քաղաքական ակտիվությունը ՍՍՀՄ Գե-
րագույն սովետի ընտրությունների օրը՝ հունիսի 16-ին, միահամուռ պաշտ-
պանելով կոմունիստական կուսակցության ներքին ու արտաքին քաղաքակա-
նությունը:

Մասսաների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, նրանց քար-
ձըր գիտակցականությամբ տոգորելու գործում կարևոր է քաղաքական ուսուց-
ման դերը: Կուսակցական կրթության և ուսուցման մյուս օղակների առկա
սիստեմը լայն հնարավորություններ է ընձեռում, որպեսզի կադրերը խորու-
թյամբ յուրացնեն կուսակցության քաղաքականության տեսությունն ու պրակ-
տիկան: Առանձին կուսկազմակերպություններ, հաշվի առնելով արդի փուլում
կուսակցության առաջադրած խնդիրները, ձգտում են այնպես կազմակերպել
քաղաքական լուսավորության գործը, որ կուսակցական, սովետական ու տըն-
տեսական ակտիվը, յուրացնելով մարքսիզմ-լենինիզմի տեսական դրույթնե-
րը, խորացնի իր գիտելիքները արտադրության կառավարման ու սոցիալա-
կան պրոբլեմների լուծման վերաբերյալ: Ահա թե ինչու նպատակահարմար է
գալիք ուստարում **քաղաքական լուսավորության բարձրագույն** **օղակներում**
**կազմակերպել զարգացած սոցիալիզմի հասարակության տեսական պրոբլեմ-**
**ների ուսումնասիրությունը:**

Կուսակցության գաղափարա-քաղաքական գործունեության կենտրոնա-
կան խնդիրներից մեկը աշխատավորության դաստիարակումն է պրոլետարա-
կան ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով: Մեր հան-
րապետության կուսկազմակերպություններն այդ ասպարեզում զգալի հաջո-
ղությունների են հասել, մանավանդ Սովետական Հայաստանի 50-ամյակի և
ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստման և տոնակատարու-
թյունների ժամանակ: Երևան, Լենինական, Կիրովական, Դիլիջան քաղաքնե-
րի, Ծամշադինի, Թալինի, Թումանյանի, Իջևանի, Ստեփանավանի, Կամոյի,
Արտաշատի, Գորիսի և շատ այլ շրջանների կուսկազմակերպություններն
այժմ ամրապնդում են ձեռք բերած հաջողությունները, ավելի մեծ եռանդ ու
ջանք են գործադրում՝ աշխատավորությանը սոցիալիստական ինտերնացիո-
նալիզմի, սովետական հայրենիքի նկատմամբ հավատարմությամբ ու սիրով
համակելու, սովետական միասնական ժողովրդին պատկանելու գիտակցու-
թյամբ տոգորելու համար:

Աշխատավորության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարա-
կությունը հետագայում ևս ուժեղացնելու նպատակով Հայաստանի կոմկուսի
Կենտկոմի բյուրոն վերջերս քննարկեց այդ հարցը և կոմպլեքսային պլան
հաստատեց տևական ժամանակի համար: Նախատեսված է գիտական հրա-
պարակումներ նվիրել լենինյան ազգային քաղաքականության, ինտերնացիո-
նալ ու հայրենասիրական դաստիարակության բնագավառում ՍՄԿԿ փորձի
ընդհանրացմանը: Միջոցառումներ են իրականացվում, որպեսզի բոլոր աշխա-



տավորները, հատկապես երիտասարդությունը, ավելի լավ տիրապետեն ռու-
սաց լեզվին՝ ազգամիջյան հաղորդակցության այդ կարևոր միջոցին: Նախա-
տեսվում է լայնորեն տարածել կուսակցական գաղափարա-քաղաքական աշ-
խատանքում եղած ողջ դրականը, ավելի արդյունավետ օգտագործել գրավոր
ու բանավոր պրոպագանդայի բոլոր հնարավորությունները, առավել աշխու-
ժացնել արհմիութենական, կոմերիտական ու պիոներական կազմակերպու-
թյունների, ստեղծագործական միությունների գործունեությունը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը նշեց նաև, որ աշխատավորության ին-
տերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակության ասպարեզում ծա-
վալված գաղափարա-քաղաքական գործունեության մակարդակն ու բովան-
դակությունը շատ կուսկոմիտեներում և սկզբնական կուսկազմակերպություն-
ներում դեռևս չեն համապատասխանում ժամանակակից կյանքի, կուսակցու-
թյան XXIV համագումարի պահանջներին:

Դեռևս անբավարար է գաղափարական աշխատանքի որակը, ամենուրեք
չէ, որ այն պլանավորվում է գիտական հիմունքներով, որի պատճառով ցածր
է դրա արդյունավետությունը: Առանձին կուսկոմիտեներում չի արմատավոր-
վել այն գիտակցությունը, թե ինտերնացիոնալ դաստիարակությունը մի միաս-
նական կոմպլեքս է, որը, արտացոլելով ռեալ իրականությունը, ընդգրկում է
մեր կյանքի բոլոր կողմերը— տնտեսության ու արտադրության, գիտության ու
կուլտուրայի, բարոյականության ու կենցաղի, հասարակական ու ազգային հա-
րաբերությունները: Ուստի, թե՛ պլանավորման, թե՛ կոնկրետ կատարման ժա-
մանակ զգացվում է միակողմանիություն, գաղափարական գործունեությունը
հաճախ ներփակվում է նպատակային միջոցառումների շրջանակում, իսկ ին-
տերնացիոնալիզմի ու հայրենասիրության առավել խոր դրսևորումները՝ հայ-
րենանվեր աշխատանքը, հասարակական պարտքի գիտակցումը, քաղաքա-
ցիության զգացումը, բարոյական նորմերի հարցերը, ինչպես հարկն է չեն
արտացոլվում:

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները պետք է **հետևո-**
**ղականորեն բարձրացնեն արտադրական կոլեկտիվների դերը մասսաների**
**ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակության նպատակով տար-**
**վող գաղափարա-քաղաքական աշխատանքում:** Դեռևս ոչ բոլոր կուսկազմա-
կերպություններն են կարողանում խելամիտ համատեղել մասսայական մի-
ջոցառումները կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի հետ տարվող ամենօրյա,
կոնկրետ դաստիարակչական աշխատանքի հետ: Հիմնականում ուշադրու-
թյունը նվիրելով մարդու արտադրական գործունեությանը՝ կուսակցական ու
կոմերիտական կազմակերպությունները հաճախ աչքաթող են անում նրա
վարքը կոլեկտիվից դուրս՝ կենցաղում, ընտանիքում, ընկերական շրջապա-
տում:

Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություն-
ների առաջնահերթ խնդիրն է **ուշադրությունը կենտրոնացնել երիտասարդու-**
**թյան շրջանում տարվող գարափարա-քաղաքական և դաստիարակչական**
**աշխատանքների արդյունավետության բարձրացման վրա:** Արտադրական
ձեռնարկությունների և բարձրագույն ուսումնական հաստատությունների երի-
տասարդական կոլեկտիվներում նույնպես դեռ աչքի է զարնում մասսայական
միջոցառումներով տարվելու հակումը, առանց դրանք համատեղելու կոնկ-
րետ գործունեության հետ: Բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստա-
տությունների կուսկազմակերպությունների պարտքն է բարձրացնել պրոֆեսո-
րա-դասախոսական, մանկավարժական կազմի պատասխանատվությունը ո՛չ
միայն ուսումնական պրոցեսի հաջող ընթացքի, այլև, հատկապես, դաստիա-
րակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման գործում:

Աշխատավորության կոմունիստական դաստիարակությունը, սովետական
մարդկանց հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով համակելը կու-
սակցության գործունեության նպատակն է, որը բխում է մեր հասարակության
կյանքի, զարգացման հեռանկարների օբյեկտիվ օրինաչափություններից:
Միաժամանակ անհրաժեշտ է համակողմանի պայքար ծավալել դեռևս գոյու-

թյուն ունեցող և բուրժուական պրոպագանդայի կողմից հրահրվող բացասական երևույթների դեմ:

Կուսկոմիտեները պետք է հետևողականորեն ջանան՝ հասարակական պրակտիկայում, գիտության, գրականության մեջ, արվեստում, գրավոր ու բանավոր պրոպագանդայում **ամրապնդել կուսակցական, դասակարգային մոտեցման սկզբունքը** ժամանակակից հասարակական երևույթների, պատմական անցքերի ու դեմքերի գնահատության հարցում: Ամեն մի շեղում մարքս-լենինյան մեթոդաբանությունից, արտացոլման լենինյան տեսությունից, ամեն մի տուրք կեղծ գիտական օբյեկտիվիզմին կարող են տանել դեպի բուրժուական գաղափարախոսության ճահիճը:

Մեր գրականության և արվեստի լավագույն գործերում, սոցիալիստական ռեալիզմի դիրքերից, ճշմարտացի վերարտադրվում է ժողովրդի կյանքը: Չխուսափելով սոցիալիստական շինարարությանն ուղեկցող դժվարություններից, տեղ գտած հակասությունների արտացոլումից՝ մեր գեղարվեստագետները ձգտում են իմաստավորել ժամանակների ու սերունդների կապը, բացահայտել նոր հասարակարգի իդեալների մարդասիրական բնույթը: Եվ այդպիսի ստեղծագործությունները, ուր մարմնավորվում են նոր աշխարհի մարդու բարոյական մաքրությունն ու գեղեցկությունը, ժողովրդական լայն ճանաչում են գտնում նաև ողջ երկրում, արտահայտում գրականության ու արվեստի առավել բնորոշ միտումը՝ դարաշրջանի առաջավոր գաղափարների սինթեզումը, սովետական ապրելակերպի, սոցիալիստական անհատի հոգևոր աշխարհի խոր իմաստավորումը:

Այնուամենայնիվ, առանձին արվեստագետների գործերում դեռևս նկատելի են ապադասակարգային հայացքներ, ազգային սահմանափակության երևույթներ, ազգային հարցի վերաբերյալ միակողմանի կամ սխալ դատողություններ, արվեստի մարքսիստական ըմբռնման խեղաթյուրումներ, ապոլիտիկության դրսևորումներ: Կուսակցական կոմիտեների պարտքն է համբերատար ու հետևողական գործունեություն ծավալել մեր ստեղծագործական աշխատողների շրջանում, որպեսզի նրանք կատարելապես տիրապետեն սոցիալական առաջընթացի շարժիչ ուժերի վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքին, խորապես ըմբռնեն կոմունիզմի միասնական, ինտերնացիոնալ կուլտուրայի ձևավորման պրոցեսը: Անհրաժեշտ է լայնորեն կիրառել գեղարվեստական գործերի ստեղծման պետական պատվերների կարգը, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը մարմնավորող երկերով հարստացնել մեր թատրոնների, համերգային ծրագրերի ռեպերտուարը, աշխուժացնել ստեղծագործական աշխատողների կենդանի, ամենօրյա կապերը արտադրական կոլեկտիվների հետ:

Զգալի թերություններ կան գրավոր ու բանավոր պրոպագանդայի ասպարեզում. արմատախիլ չեն արվել մակերեսային մոտեցումը, շաբլոնն ու ձևապաշտությունը՝ կոմունիստական դաստիարակության պրոբլեմները լուսաբանելիս: Շրջանային, քաղաքային ու հանրապետական մամուլի էջերում, ռադիոյի և հեռուստատեսության հաղորդումներում, կինեմատոգրաֆիստների գործերում միշտ չէ, որ վառ ու ցայտուն են արտացոլվում սովետական մարդկանց ինտերնացիոնալ ոգին, մեր երկրի էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի ինտերնացիոնալ բնույթը: Մամուլում դեռևս խոր ու համակողմանի չի վերլուծվում կուսկազմակերպությունների գործունեությունը կոմունիստական դաստիարակության ասպարեզում, անբավարար է ընդհանրացվում ու տարածվում դրական փորձը:

Ժամանակակից միջազգային կացությունը գաղափարական ճակատի գործիչներին թելադրում է նորանոր խնդիրներ, որոնք բխում են միջազգային լարվածության թուլացումից: Հակակոմունիզմը, հակասովետիզմը շարունակում են մնալ կապիտալիստական աշխարհի գաղափարական կյանքի հիմնական բովանդակությունը. փոխվում են միայն ձևերը: Բացահայտ թշնամանքի փոխարեն առաջ են քաշվում գաղափարական ներթափանցման առավել նուրբ



և քողարկված ձևեր: Անհրաժեշտ է խորապես գիտակցել հողագնդի վրա առաջացող նոր իրողությունները, արագ և բանիմացորեն արձագանքել կյանքի փոփոխվող պահանջներին, կատարելագործել գաղափարա-տեսական, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը:

Կուսկազմակերպությունների, հասարակական գիտությունների, ստեղծագործական միությունների, հանրապետության գաղափարախոսական ճակատի բոլոր աշխատողների խնդիրն է՝ առավել խոր սկզբունքայնությամբ ու հաստատակամությամբ հանդես գալ ընդդեմ գաղափարական անհոգության, քաղաքական կարճատեսության, քաղաքական զգոնության թուլացման: Այս ամենը հնարավորություն կընձեռի ուժեղացնելու պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ, սիստեմատիկաբար և առավել համոզիչ փաստերով մերկացնելու իմպերիալիզմի պնակալեզ դաշնակցության հակասովետական, նացիոնալիստական քաղաքականությունն ու գործելակերպը:

Գաղափարա-քաղաքական գործունեության ողջ սիստեմը պետք է առավելագույնս նպաստի այն բանին, որ սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի սկզբունքները դառնան յուրաքանչյուրի խոր համոզմունքը, ապրելակերպի ու վարքի նորմը, աջակցեն հանրապետության աշխատավորական զանգվածների քաղաքական և աշխատանքային ակտիվության հետագա զարգացմանը:

Նոր մարդու ձևավորման պրոցեսում վիթխարի է բարոյական դաստիարակության պրոբլեմների նշանակությունը: Մեր ժամանակներում բուրժուական պրոպագանդիստական մեքենան ճգնում է «ապացուցել», թե, սովետական հասարակության նյութական մակարդակի բարձրացմանը զուգահեռ, թուլանում է մարդկանց հետաքրքրասիրությունը կոմունիստական գաղափարների հանդեպ, զարգանում են եսակենտրոն, անհատապաշտական ձգտումները, գլուխ է բարձրացնում «սպառողական հոգեբանությունը»: Բուրժուական գաղափարախոսների նման պնդումները, անշուշտ, ոչ մի օբյեկտիվ հիմք չունեն: Մեր կուսակցության գործունեության խոշորագույն նվաճումներից մեկը կոմունիստական բարոյականության վեհ իդեալների տեր անհատի դաստիարակումն է: Ստեղծված է հասարակական այնպիսի մթնոլորտ, ուր ներդաշնակ են անհատի, կոլեկտիվի ու հասարակության շահերը: Սովետական մարդը կոլեկտիվում է դրսևորում իր կարողությունները, գտնում իր ձիրքերի ու անհատականության զարգացման նպաստավոր պայմանները. մեր երկրում վաղուց ի վեր ոչնչացված են բուրժուական իրավակարգից սերած անհատապաշտության սոցիալական արմատները:

Թշնամական պրոպագանդան իր հույսը կարող է դնել միայն առանձին անհատների վրա, որոնց գիտակցության և հոգեբանության մեջ դեռևս արմատախիլ չեն արված անցյալի մնացուկները, նրանց վարքում և ապրելակերպում դրսևորվում են «սպառողական հոգեբանության» վերապրուկները, որոնք այս կամ այն չափով արգելակում, խոչընդոտում են հասարակության առաջընթացը: Եվ քանի որ դաստիարակչական աշխատանքի օբյեկտը ո՛չ միայն մարդկային խմբերն են, ընդհանրությունները, այլև ամենուրեք ու միշտ նաև կոնկրետ անհատները, կուսակցությունն իր խնդիրն է համարում պայքարել նրանց բարոյական անաղարտության ու կատարելության համար:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ապրիլյան (1973 թ.) պլենումը մեծ ուշադրություն նվիրեց հանրապետության հասարակական կյանքի առաջընթացը խոչընդոտող այնպիսի երևույթների բացահայտմանը, ինչպիսիք են՝ հանրային սեփականության հափշտակումները, ընչաքաղցությունը, կաշառակերությունը, հասարակական կարգ ու կանոնի խախտումները, բուրժուական անհատապաշտության դրսևորումները: Հանրապետությունում անհաշտ պայքար ծավալվեց կոմունիստական բարոյականությանը հակոտնյա այդ երևույթների դեմ: Աշխատանքից ազատվեցին և պատասխանատվության ենթարկվեցին մի շարք ղեկավարներ, որոնք շահադիտական նպատակներով չարաշահել էին իրենց պաշտոնական դիրքը:

Այսուհետև ևս կուսկազմակերպությունների խնդիրն է՝ **հմտորեն զուգոր-**

**դել վարչական մարմինների գործունեությունը հասարակության լայն խավերի առավել ակտիվացման հետ, հասնել այն բանին, որ սովետական ապրելակերպի սկզբունքները դառնան բոլոր քաղաքացիների վարքի նորմ:** Քաղաքական-գաղափարական աշխատանքի բոլոր միջոցներով անհրաժեշտ է մարդկանց կենցաղում և աշխատանքում, գիտակցության և հոգեբանության մեջ արմատավորել կոմունիզմ կառուցողի բարոյական հատկանիշները:

Գաղափարա-քաղաքական պրոպագանդայի բարելավման մասին դատողությունները դատարկ կրակոց կդառնան, եթե մեր ամենօրյա աշխատանքում դրանք սերտորեն չշաղկապվեն երկրի ու հանրապետության առջև ծառացած տնտեսական խնդիրներին, տվյալ դեպքում՝ հնգամյակի որոշիչ տարվա առաջադրանքների կատարմանը: 1973 թվականի օրինակը լավագույն վկայությունն է այն բանի, որ մեր տնտեսական հաջողություններն ապահովվել են նաև կուսակցության դաստիարակչական-պրոպագանդիստական ներգործուն միջոցներով:

Այժմ **հնգամյակի ընթացիկ տարվա առաջադրանքների կատարման, կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման ասպարեզում հույժ կարևոր է գաղափարական գործունեության նշանակությունը:** Պրոպագանդիստական կադրերի ուշադրության կենտրոնում պետք է լինեն հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հարցերը: **Այս** արմատական խնդրի լուծման համար, ինչպես արտահայտվեց Լ. Ի. Բրեժնևը, կա «երկու հենակետ». նախ՝ տնտեսավարման ղեկավարման բարելավումը, և երկրորդ՝ աշխատավորական զանգվածների մոբիլիզացումը, նախաձեռնության ու ակտիվության զարգացումը:

Գաղափարական գործունեության արդյունավետությունը մեծապես պայմանավորված է նրանով, թե ինչպե՛ս և ի՛նչ խորությամբ ենք կարողանում բացահայտել ու պրոպագանդել առաջավոր արտադրական փորձը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները: Անհրաժեշտ է հնարավորին չափ լայնորեն տարածել տնտեսավարման նոր ձևերն ու մեթոդները, որոնք կապված են արդյունաբերության մեջ խոշոր միավորումների, ագրարային-արդյունաբերական համալիրների ստեղծման, մասնագիտացման ու կոոպերացման խորացման, կառավարման ավելորդ օղակների վերացման հետ:

Պայքարելով աշխատանքի արտադրողականության բարձրացման, տնտեսավարման նոր ոճի արմատավորման համար՝ աշխատավորական լայն զանգվածները պետք է գիտակցեն, որ իրենց արտադրական ջանքերը հայրենիքի հզորության, ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի աղբյուր են: Այդ նպատակով անհրաժեշտ է օգտագործել կուսակցական ներգործության բոլոր միջոցները— մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, բանավոր պրոպագանդան ու ագիտացիան, գրականությունն ու արվեստը:

Պրոպագանդայի միջոցներով հարկ է ակտիվ միջամտել հանրապետության արդյունաբերության զարգացման տեմպերի արագացմանը, գյուղատնտեսության առանձին ճյուղերի (մասնավորապես խաղողագործության և պտղաբուծության) թերությունների վերացմանը, ամեն մի արտադրանքի որակի առավելագույն բարձրացմանը:

Բանավոր ու գրավոր պրոպագանդան, հասարակական կարծիքը պետք է առավելագույնս նպաստեն արտադրության ղեկավարման մեջ կուսակցական ներգործության ուժեղացմանը, դառնան անտնտեսվարության ու շռայլության, հետամնացության և քարացածության, բյուրոկրատիզմի, պետական ու աշխատանքային կարգապահության խախտումների դեմ մղվող պայքարի հզոր զենք:

Մամուլի օրգանները պարտավոր են մշտապես վերահսկել շահագործման ենթակա կարևորագույն օբյեկտների շինարարությանը, անհաշտ սկզբունքայնությամբ քննադատել հասարակական կյանքի բոլոր բնագավառների, հատկապես, արտադրության կազմակերպման թերություններն ու սխալները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն վերջերս քննության առավ մամուլի քննադատական ելույթների ներգործունության հարցը: Բյուրոն դատապարտեց մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների, կուսակցական կոմիտեների սխալ վերաբերմունքը մամուլի քննադատական դիտողությունների նկատմամբ: Անհրաժեշտ է հասարակական կարծիք ստեղծել դրանց ղեկավարների շուրջ, բարձրացնել մամուլի քննադատական ելույթների արդյունավետությունը:

Գաղափարական ճակատի գործիչները մեծ և պատասխանատու խնդիրներ ունեն համաժողովրդական սոցիալիստական մրցության կազմակերպման ասպարեզում: **Նրանք պետք է մասսաների ստեղծագործական ակտիվությունը ծառայեցնեն այսօրվա կարևորագույն պրոբլեմի լուծմանը՝ արտադրության որակական ցուցանիշների բարելավմանը, ժողովրդատնտեսական պլանների կատարմանն ու գերակատարմանը:** Կարևոր են նաև սոցմրցության ընթացքի օպերատիվ ու որակյալ լուսաբանումը, մրցության արդյունքների լայն հրապարակայնության ապահովումը, հաղթողների գաղափարա-բարոյական օրինակելի հատկանիշների բազմակողմանի բացահայտումը:

Գիտության ու տեխնիկայի սրընթաց զարգացման արդի պայմաններում օրինաչափ են «մարդկային գործոնի» դերի բարձրացումը, նրա մասնագիտական հոգեբանական պատրաստականությունը, ակտիվության ու կազմակերպվածության աճը, որին մեծապես կխթանի տնտեսագիտական ուսուցման սիստեմը: Կուսակցական կոմիտեները, արհմիութենական կազմակերպությունները հետևողականորեն պետք է հաղթահարեն ֆորմալիզմն ու մակերեսայնությունը, բարձրացնեն աշխատավորության տնտեսագիտական ուսուցման արդյունավետությունը:

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը և մեր հասարակության հետագա առաջընթացը, ինչպես նշեց կուսակցության XXIV համագումարը, անհնար է առանց նոր, բազմակողմանի զարգացած մարդու դաստիարակության: Այդ պրոբլեմի **կենտրոնական հարցերից մեկը աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի մշակումն է:** Կարևորը հատկապես երիտասարդ սերնդին աշխատասիրությամբ համակելն է: Կուսկազմակերպությունների պարտքն է ապահովել դաստիարակչական գործունեության խելացի զուգորդումը երեք կարևոր օղակներում— ընտանիքում, ուսումնառության պրոցեսում, արտադրական կոլեկտիվում:

Հանրապետությունում բանվորական կադրերի հոսունությունը հիմնականում կապված է միջնակարգը նոր ավարտած երիտասարդների հետ: Ուստի, անհրաժեշտ է արմատապես բարելավել երիտասարդ, սկսնակ բանվորների շրջանում տարվող գաղափարա-դաստիարակչական պրոպագանդան, ապահովել աշխատանքային անհրաժեշտ պայմաններ, բարոյական նպաստավոր մթնոլորտ:

Կոմունիստական շինարարության արդի փուլը նորանոր պահանջներ է թելադրում կուսակցական ղեկավարությանը՝ գաղափարական աշխատանքը արմատապես բարելավելու համար: Ցավոք, մեզանում դեռևս գերիշխում է ձևական մոտեցումը: Դրա պատճառով առաջավոր փորձն ու արժեքավոր շատ նախաձեռնություններ տարիներով չեն արմատավորվում: Ֆորմալիզմի դեմ պայքարը գաղափարա-դաստիարակչական աշխատանքի կարևոր խնդիրն է:

Գաղափարա-քաղաքական գործունեության մակարդակի բարձրացման համար ոչ նվազ նշանակություն ունի նաև գաղափարական ոլորտի բոլոր աշխատողների մշտական ուսուցումը, գիտելիքների հարստացումը, այդ բնագավառում առաջավոր փորձի ընդօրինակումը: Ղեկավարն ու կազմակերպիչը չպետք է ետ մնան հասարակության մեջ կատարվող սոցիալ-տնտեսական վերափոխումների տեմպից, բնակչության հիմնական զանգվածի կրթական մակարդակի աճից:

Կուսակցության Կենտկոմը խիստ կարևորում է գաղափարա-դաստիարակչական աշխատանքի համակողմանի կատարելագործումը: Այժմ նպաստավոր պայմաններ են ստեղծված այդ գործը ժամանակակից պահանջմունքների մակարդակին հասցնելու համար: Կուսակցության ցուցումների եռանդուն ու արդյունավետ իրականացումը կուսկազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի կարևորագույն խնդիրն է:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

**Ֆ. Գ. ՆԻԿՈՅԱՆ**
ՀԿԿ Երևանի Շահումյանի շրջկոմի քարտուղար

ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման ծրագիրը հաջողությամբ իրականացնելու գործում վճռական դեր են խաղում նաև սոցիալիստական մրցության պատշաճ կազմակերպումը և հետագա կատարելագործումը։ Խնդրի կարևորությունից ելնելով՝ ՍՄԿԿ Կենտկոմը 1972 թ. հատուկ որոշում ընդունեց «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» և նախանշեց կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, ինչպես նաև մինիստրությունների ու գերատեսչությունների անելիքներն այդ ասպարեզում։

ՀԿԿ Շահումյանի շրջկոմը ժամանակին ուսումնասիրեց սոցիալիստական մրցության վիճակը և կուսակցական ակտիվի ժողովում քննարկեց «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը և շրջանի կուսակցական կազմակերպությունների խնդիրները», գործնական միջոցառումներ մշակեց՝ ձեռնարկություններում ու կազմակերպություններում Կենտկոմի որոշումը մինչև վերջ կենսագործելու համար։

Ուղղակի պետք է ասել, որ Կենտկոմի որոշումը սթափեցնող և մոբիլիզացնող մեծ նշանակություն ունեցավ ինչպես կուսշրջկոմի, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպությունների համար։ Ամենուրեք որոշակիորեն փոխվեց վերաբերմունքը սոցիալիստական մրցության կազմակերպման, արդյունքների ամփոփման ու հրապարակայնության նկատմամբ։ Իրենց գործունեության ընթացքում, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի նոր պահանջներով, շրջանի սկզբնական կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները իններորդ հնգամյակի տարիներին սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման զգալի փորձ կուտակեցին, լուրջ հաջողությունների հասան պետական առաջադրանքների ու ստանձնած պարտավորությունների կատարման ասպարեզում։ Շրջանում սոցիալիստական մրցության բարելավմանը մեծ չափով նպաստեց նաև «Սոցիալիստական մրցության ղեկավարման գործում Շահումյանի շրջանի կուսկազմակերպությունների աշխատանքի մասին» ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. հուլիսի 23-ի որոշումը։ Բարձր գնահատելով այդ բնագավառում կուսշրջկոմի և սկզբնական կազմակերպությունների ծավալած արդյունավետ գործունեությունը՝ ՀԿԿ Կենտկոմը միաժամանակ բացահայտեց լուրջ թերություններ։ Կուսշրջկոմի բյուրոն հանգամանորեն քննարկեց որոշումը և մշակեց գործնական միջոցառումներ՝ այն հետևողականորեն կենսագործելու և սոցիալիստական մրցությանը նոր թափ հաղորդելու համար։



ՀԿԿ Կենտկոմի այս որոշումը ջերմ արձագանք գտավ արդյունաբերական ձեռնարկություններում։ Կազմակերպական արդյունավետ աշխատանքի շնորհիվ «Էլեկտրոն», սարքաշինական գործարանների, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի, դեկորատիվ գործվածքեղենի, տրիկոտաժի № 2 ֆաբրիկաների կոլեկտիվները հանրապետությունում առաջիններից էին, որ հետևեցին Մոսկվայի, Լենինգրադի, Ուկրաինայի և Բելոռուսիայի առաջավոր ձեռնարկությունների նախաձեռնությանը։ Հաշվի առնելով իրենց ներքին ռեզերվներն ու հնարավորությունները՝ նրանք հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա համար ընդունեցին 1.050 հազար ռուբլու հանդիպական պլան։ Մեր ձեռնարկություններում ծնված հայրենասիրական այդ նախաձեռնությանը անդրադարձավ կուսշրջկոմի բյուրոն։ Բյուրոն հանձնարարեց շրջանի արդյունաբերության, տրանսպորտի և շինարարության ձեռնարկությունների կուսկազմակերպություններին այն տարածել աշխատավորական կոլեկտիվներում։ Նոր շարժումը լայն արձագանք գտավ բոլոր կոլեկտիվներում, և հանդիպական պլանի ընդհանուր գումարը հասավ 3,5 միլիոն ռուբլու։

Ամեն մի նոր ու առաջավոր արժանանում է կուսշրջկոմի ուշադրությանը։ Շրջկոմն ընդհանրացնում է ձեռնարկություններում առանձին անհատների, բրիգադաների ու տեղամասերի սոցիալիստական մրցության ուսանելի փորձը և այն լայնորեն պրոպագանդում։ Դեռևս անցած տարվա սկզբին կուսշրջկոմը ուսումնասիրեց և բյուրոյում քննարկեց Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի գործվածքային № 2 արտադրամասի բրիգադավար, ՍՄԿԿ անդամ Յու. Պետրոսյանի և համաշինական № 1 տրեստի № 2 շինվարչության բրիգադավար, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Գ. Սարգսյանի ղեկավարած կոլեկտիվների նախաձեռնությունը՝ 1973 թ. և հնգամյակի պլանները ժամկետից շուտ և տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով կատարելու համար սոցիալիստական մրցություն ծավալելու մասին։ Շրջկոմը հավանություն տվեց նրանց հայրենասիրական նախաձեռնությանը և հանձնարարեց շրջանի բոլոր կազմակերպություններին լայնորեն մասսայականացնել ու տարածել այն։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում սոցիալիստական մրցության հրապարակայնությանը, ստանձնած պարտավորությունների լայն ցուցադրմանը։ Հանգամանալի ուսումնասիրությունից հետո կուսշրջկոմի բյուրոյի 1973 թ. փետրվարի 13-ի նիստում քննարկեցինք «Շրջանի աշխատավորության 1973 թ. սոցիալիստական պարտավորությունների կատարմանը նվիրված ցուցադրական ագիտացիայի վիճակը»։ Նշվեց, որ սկզբնական կուսկազմակերպությունները կիրառում են քաղաքական-դաստիարակչական և ագիտացիոն-մասսայական աշխատանքի բազմազան ձևեր ու մեթոդներ, հմտորեն գլխավորում արտադրության մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունն ու սոցիալիստական մրցությունը։ Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի, «Էլեկտրոն», սարքաշինական, ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրության մեխանիկական գործարանների, տրիկոտաժի № 2, դեկորատիվ գործվածքեղենի ֆաբրիկաների, № 1 համաշինական տրեստի և այլ կուսկազմակերպությունների սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարման համար այժմ ևս լավ են օգտագործում քաղաքական ագիտացիայի այնպիսի ներգործուն ձևը, ինչպիսին ցուցադրական ագիտացիան է։ Այդ ձեռնարկությունների տերիտորիայում, արտադրամասերում, առանձին աշխատատեղերում ցուցադրված են 1974 թ. սոցիալիստական պարտավորությունները։ Բազմապիսի լոզունգներ, կոչեր են նվիրված ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, իններորդ հնգամյակի առաջադրանքների կենսագործման, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի, վառելանյութի, աշխատաժամանակի ռացիոնալ ու խնայողի օգտագործման խնդիրներին։ Այդ ամենը ոգևորում և մոբիլիզացնում է աշխատավորներին։ Կուսկազմակերպությունները պարբերաբար թարմացնում են պատվո տախտակները, ժամանակին ամփոփում սոցիալիստական մրցության

*քարտաշ-որմնադիրների, ծեփագործների և մոնտաժողների բրիգադներին, բետոնային հանգույցի կոլեկտիվին: Բրիգադներում սոցմրցության արդյունքները կամփոփվեն ամսվա, իսկ շինվարչություններում՝ եռամսյակի վերջում: Ընդ որում, հաղթելու հիմնական պայման կհամարվեն նաև աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ մեթոդները, տնտհաշվարկային, կոմպլեքսային վարձատրման և ակորդային պարգևատրման սկզբունքը: Առաջնությունը կտրվի «Մոսշինի» առաջավոր բրիգադավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Ն. Զլոբինի մեթոդով աշխատող բրիգադներին: Սոցմրցության արդյունքներն ամփոփելու համար ստեղծվել է հատուկ հանձնաժողով:*

*Իններորդ հնգամյակի որոշիչ տարում համամիութենական սոցմրցություն ծավալելու վերաբերյալ որոշման հրապարակումից անմիջապես հետո, «Հայէլեկտրասարք» միավորման Երևանի չափիչ սարքերի գործարանի կուսկոմիտեն բոլոր արտադրամասերում ու տեղամասերում կազմակերպեց դրա ուսումնասիրությունը, այնուհետև քննարկեց փաստաթուղթը և միջոցառումներ մշակեց որոշման պահանջներն ու ստանձնած պարտավորությունները կատարելու համար: Սոցիալիստական մրցության գործը բարելավելու, այդ կապակցությամբ արտադրական օղակներին գործնական օգնություն ցույց տալու և ղեկավար կադրերին ու ինժեներատեխնիկական աշխատողներին սոցմրցության կազմակերպման մեջ ներգրավելու նպատակով, կուսկոմիտեն ստեղծել է օպերատիվ շտաբ, որի յուրաքանչյուր անդամ կցված է որոշակի արտադրամասի: Շտաբը սահմանել է իր գործելու ժամերը, շաբաթը մեկ անգամ անցկացնում է օպերատիվ խորհրդակցություն՝ կատարած աշխատանքը վերլուծելու և նոր միջոցառումներ մշակելու համար: Շտաբի և նրա խմբերի գործունեության արդյունքները հաղորդվում են գործարանի ռադիոհանգույցով և լուսաբանվում պատի թերթերում: Այս ամենը դրական ներգործություն է ունենում գործերի վիճակի վրա, և ձեռնարկությունը կատարում է ինչպես պետական առաջադրանքներն ու սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները, այնպես էլ հանդիպական պլանները:*

*Շրջանի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը, ամփոփելով 1973 թ. սոցիալիստական մրցության արդյունքները, ընդունեց հնգամյակի որոշիչ տարվա սոցպարտավորությունները և որոշեց շարունակել ավանդական մրցությունը Էստոնական ՍՍՀ Խիյումայի, Ադրբեջանական ՍՍՀ Շահումյանի, Արթիկի և Երևան քաղաքի Օրջոնիկիձեի շրջանների հետ: Շրջանի աշխատավորական կոլեկտիվները խոստացել են արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը կատարել դեկտեմբերի 24-ին, նախորդ տարվա համեմատությամբ արտադրանքի ծավալը մեծացնել 10 տոկոսով, պլանից ավելի շահագործման հանձնել 10 հազար քմ բնակելի տարածություն և այլն: Պարտավորություններում հատուկ ուշադրություն է նվիրվում գիտատեխնիկական առաջընթացի արագացմամբ արտադրության արդյունավետության բարձրացման հարցերին:*

*Շրջանի աշխատավորությունը խորապես համոզված է, որ պլաններն ու բարձր պարտավորությունները հնարավոր է կատարել եռանդուն աշխատանքով ու համառ պայքարով, նոր ռեզերվների հայտաբերման, ժամանակի ռացիոնալ օգտագործման և արտադրողականության բարձրացման միջոցով: Այս իրողության կոնկրետ վկայությունն առաջին եռամսյակի արդյունքներն են: Արդյունաբերական ձեռնարկություններն զգալիորեն գերակատարել են ինչպես արտադրանքի իրացման, այնպես էլ թողարկման ու աշխատանքի արտադրողականության աճի պլանները: Բավական է նշել, որ իրացումը, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 12,8, իսկ արտադրության ծավալը՝ 18 տոկոսով: Այսօրվա դրությամբ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներն ավելի քան 2,2 մլն ռուբլու հանդիպական պլաններ են ընդունել և պատվով են կատարում դրանք:*

# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ**
ՀԿԿ Կիրովականի Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

Կիրովական քաղաքի սկզբնական կուսկազմակերպությունները, կենսագործելով կուսակցության XXIV համագումարի պահանջները և «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, զգալի աշխատանք են կատարում աշխատավորական լայն զանգվածների տնտեսագիտական կրթությունը բարելավելու համար: Քաղաքում ստեղծվել է մասսայական տնտեսագիտական ուսուցման սիստեմ, արտադրական ձեռնարկություններում, տրանսպորտի և շինարարական կազմակերպություններում մշակվել և իրականացվում են հեռանկարային պլաններ, ստեղծվում է անհրաժեշտ ուսումնական բազա:

Վերջին երկու տարում քաղաքի կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները զգալիորեն ընդլայնել են աշխատավորների տնտեսագիտական կրթության մասշտաբները: Եթե 1971 թ. միայն առանձին ձեռնարկություններում էին գործում տնտեսագիտության հարցերն ուսումնասիրող խմբակներ, ապա ընթացիկ ուսումնական տարում յուրաքանչյուր կոլեկտիվի անդամների կեսից ավելին սովորում է այդ սիստեմի տարբեր օղակներում: Ընդսմին, ուսուցումը կազմակերպվում է շերտավորված, տվյալ ձեռնարկության և տարբեր կատեգորիաների բանվոր-ծառայողների աշխատանքի բնույթին համապատասխան: Այժմ քաղաքի ձեռնարկություններում և հիմնարկություններում կանոնավոր գործում են տնտեսական գիտելիքների հիմունքներն ուսումնասիրող 102 դպրոց՝ 2492, կոմունիստական աշխատանքի 171 դպրոց՝ 3544 ունկնդիրներով: 4500 մարդ տնտեսագիտության տարբեր հարցեր են ուսումնասիրում կուսակցական և կոմերիտական լուսավորության ցանցում: Խոշոր գործարաններում գործում են տնտեսական գիտելիքներն ուսումնասիրող ժողովրդական համալսարաններ, կարճատև դասընթացներ: Այսպիսով, ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված է 11.536 մարդ:

Մեզ համար կարևոր է ո՛չ միայն տնտեսագիտական ուսուցման շրջանակների ընդլայնումը, այլև դրա կազմակերպման, տնտեսագիտական պատրաստության վիճակի գնահատման նոր մոտեցումը: Այժմ քաղաքի կուսկազմակերպությունները տնտեսագիտական պատրաստությունը դիտում են որպես յուրաքանչյուր աշխատողի գործնական որակավորման պարտադիր պայման, նրա ակտիվության ու նախաձեռնության զարգացման կարևոր միջոց, որոնք նպատակամղվում են իններորդ հնգամյա պլանի հաջող կատարմանը:

Աշխատավորների տնտեսագիտական ուսուցման դրական փորձ են կուտակել քաղաքի շատ կուսկազմակերպություններ: «Ավտոմատիկա» գործարանի կուսկոմիտեն (քարտուղար՝ Հ. Ազարյան) և դիրեկցիան (դիրեկտոր՝ Հ. Հարությունյան) ձգտում են աշխատողներին զինել տնտեսական գիտելիքներով, նրանց սովորեցնել տնտեսապես ճիշտ մտածել, տնտեսվար ձևով մոտենալ հանձնարարված գործին: Կուսկոմիտեի կողմից հաստատված՝ կազ-

րերի տնտեսագիտական ուսուցման 1972—1975 թթ. հնգամյակային պլանը գործարանի զարգացման սոցիալական, տեխնիկական ու տնտեսական պլանի բաղկացուցիչ մասն է: Որոշակի գործ է արվել ուսուցման նյութական բազա ստեղծելու համար: Կոլեկտիվի անդամների 40 տոկոսն ընդգրկված է տնտեսագիտական ուսուցման տարբեր ձևերում: Դպրոցների ու սեմինարների պարապմունքների հարցով լավ է զբաղվում տնտեսագիտական կրթության կաբինետը: Այստեղ լուրջ ուշադրություն են նվիրում պրոպագանդիստական կադրերի ընտրությանը: Բոլոր ղեկավար աշխատողները պատասխանատվության բարձր զգացումով են կատարում իրենց հանձնարարված գործը: Այնպիսի թեմաների ուսումնասիրությունը, ինչպիսիք են՝ «Արտադրության արդյունավետության բարձրացումը տնտեսության զարգացման գլխավոր գործոնն է», «Ձեռնարկության արտադրական ֆոնդերը, դրանց օգտագործման արդյունավետությունը», «Տեխնիկական առաջընթացը և տեխնիկայի օգտագործումը» օգնում են բանվորներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին՝ գործիմացությամբ լուծելու արտադրական խնդիրները: Աշխատողների մեծ մասը խորությամբ գիտակցում է, որ տնտեսագիտական հարցերի ուսումնասիրությունը, ստացած գիտելիքները պրակտիկայում ներդնելը օգնում են՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, բարելավելու արտադրանքի որակը:

Գործարանում մի քանի տասնյակ բանվորներ իններորդ հնգամյակի իրենց առաջադրանքները կատարել են 2,5—3 տարում և այժմ աշխատում են տասներորդ հնգամյակի հաշվին: Դպրոցի ունկնդիր, մեխանիկական արտադրամասի խառատ Վարդգես Գալստյանը գոհ է, որ վերջին տարիներին տնտեսագիտական հարցեր է ուսումնասիրում: Դեռևս 1971 թ. նա որոշեց հնգամյակը կատարել ժամկետից շուտ և հաստատ մնաց իր խոստմանը. արդեն անցյալ տարվա հուլիսից աշխատում է հաջորդ հնգամյակի հաշվին: Վ. Գալստյանն արել է նաև մի շարք ռացիոնալիզատորական առաջարկություններ:

Գործարանի կուսկոմիտեի և գործարկոմի նախաձեռնությամբ խառատ Վ. Գալստյանի աշխատանքի փորձն ուսումնասիրեցին կոմունիստական աշխատանքի դպրոցների ունկնդիրները, խառատները: Բոլոր խառատներն այժմ այդ փորձն աստիճանաբար ներդնում են արտադրության մեջ, կատարում ու գերակատարում պլանները:

Հետաքրքրական է մեկ ուրիշ ցուցանիշ: Միայն անցյալ տարի տնտեսագիտական ուսուցման մեջ ընդգրկվածներն արեցին տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմանն ուղղված ռացիոնալիզատորական 34 առաջարկություն, որից արտադրության մեջ արմատավորվեց 29-ը՝ 58 հազար ռուբլի տնտեսական օգուտով:

Տնտեսագիտական հարցերի ուսումնասիրությունը և ստացած գիտելիքները պրակտիկայում կիրառելը օգնեց գործարանի աշխատողներին՝ ժամանակին արմատավորելու № 1 և № 2 հարահոս գծերը, փաթաթման արտադրամասում ներդնելու լաքապատման ու մեկուսացման ուլտրաձայնային եղանակը, գործարկելու միջարտադրամասային կոնվեյերը, մեքենայացնելու աշխատատար մի շարք պրոցեսներ: Աշխատանքային և նյութական նվազ ծախսումներով շատ և բարձրորակ արտադրանք ստանալը դարձել է տեխնոլոգների գլխավոր հոգսը: Նրանց առաջարկությամբ անցած երկու տարում մեխանիկական մշակման 20 գործողություն տեղափոխվեց ավտոմատ հաստոցների վրա, 34 անուն դետալ մետաղի փոխարեն սկսեցին պատրաստել պլաստմասսայից և կապրոնից: Այդ բոլորի արդյունքը եղավ այն, որ հնգամյակի անցած ժամանակաշրջանում գործարանում աշխատանքի արտադրողականության միջին տարեկան աճը կազմեց 12,6, արտադրանքի թողարկմանը՝ 19,9 տոկոս: Եվ այդ ամենը աշխատավարձի միայն 4 տոկոս միջին տարեկան աճի, աշխատողների թվի պայմանական կրճատման դեպքում:

Կադրերի տնտեսագիտական ուսուցումն օգնում է քաղաքի արտադրական կոլեկտիվներին՝ մշակելու և հաջողությամբ կատարելու հանդիպական



պլանները: Այդպիսի պլաններ ընդունելու համար ձեռնարկություններում ստեղծվեցին հանձնաժողովներ, որոնցում ներգրավվեցին ղեկավար աշխատողներ, տեխնոլոգներ, տնտեսագետներ, արտադրության առաջավորներ: Կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները ծավալեցին լայն բացատրական աշխատանք, դպրոցների և սեմինարների պարապմունքներում պրոպագանդիստները պարզաբանեցին ունկնդիրներին հանդիպական պլանների էությունն ու առանձնահատկությունը, դրանց կատարման գործում յուրաքանչյուրի դերը: Բոլորի նշանաբանը դարձավ— մարդը՝ հնգամյակին, հնգամյակը՝ մարդուն: Լամպագործները 1974 թ. համար ընդունել են 500 հազար ռուբլու հանդիպական պլան: Դրա շնորհիվ արտադրանքի ծավալը, 1974 թ., 1970 թ. համեմատությամբ, պլանավորված 78,2-ի փոխարեն, կաճի 82,6 տոկոսով: Մուշտակագործները պարտավորվել են պլանից դուրս իրացնել 180 հազար, մանրաթելագործները՝ 200 հազար ռուբլու արտադրանք: Քաղաքի 16 ձեռնարկությունների կոլեկտիվներ ունեն իրենց հանդիպական պլանները և հաջողությամբ են կատարում այն:

Տնտեսագիտական ուսուցման արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրությամբ և նրանց հետ տարվող աշխատանքով: Հաշվի առնելով այդ՝ քաղաքային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները պրոպագանդիստական աշխատանքում ներգրավում են առավել պատրաստված ընկերների, փորձված կոմունիստ-տնտեսավարների, արտադրության պետերի, բաժինների վարիչների, տնտեսագետների: Տնտեսագիտական կրթության սիստեմում ընդգրկված 473 պրոպագանդիստներից 390-ը ունի բարձրագույն կրթություն: Որպես կանոն, քաղկոմը բոլոր ղեկավար աշխատողներին ներգրավում է պրոպագանդիստական գործունեության մեջ: Դա նպաստում է ուսուցման բովանդակության խորացմանը, ունկնդիրների պատասխանատվության բարձրացմանը, պարապմունքներում արված գործնական առաջարկությունների ավելի արագ կենսագործմանը:

Լուրջ ուշադրություն է նվիրվում պրոպագանդիստների ուսուցմանը: Կուսքաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, նկատի առնելով, որ տնտեսագիտական կրթության սիստեմում պրոպագանդիստների ճնշող մեծամասնությունը միայն վերջին տարիներին է ստանձնել այդ գործը, շատերը չունեն պարապմունքները վարելու փորձ, մեթոդական, ինչպես նաև տեսական օգնության կարիք են զգում, պլանավորված աշխատանք են տանում պրոպագանդիստների հետ, նրանց ապահովում ուսումնական պլաններով, մեթոդական հանձնարարականներով: Քաղկոմի քաղլուսկաբինետի մշտապես գործող սեմինարը պրոպագանդիստների համար կազմակերպում է հրահանգչական խորհրդակցություններ, դասախոսություններ, կոնսուլտացիաներ՝ այդ գործին լայնորեն մասնակից դարձնելով քաղաքի բուհերի դասախոսներին, կուսակցական ու սովետական ղեկավար աշխատողներին: Պրոպագանդիստներին սիստեմատիկաբար հաղորդվում են քաղաքի աշխատավորության ձեռք բերած հաջողությունները, նրանց տեղյակ են պահում հետագա անելիքներին:

Լավագույն պրոպագանդիստների աշխատանքի փորձը վկայում է, որ կենդանի ձևով անցկացվող պարապմունքները պրակտիկ լավ արդյունք են տալիս: Քաղաքում անել են հմուտ, իրենց գործն իմացող շատ պրոպագանդիստներ: Նրանցից են՝ Հ. Հարությունյանը, Ն. Յարալյանը («Ավտոմատիկա» գործարան), Հ. Ղամբարյանը, Հ. Գրիգորյանը («Ավտոգենմաշ» գործարան), Է. Գրիգորյանը, Հ. Ամիրբեկյանը (ճշգրիտ հաստոցների գործարան), Կ. Հազրոյանը (էլեկտրալամպերի գործարան), Բ. Քոչինյանը (քիմիական մանրաթելի գործարան), Մ. Սեդրակյանը (ինքնուրույն կոնստրուկտորական բյուրո) և շատ ուրիշներ: Պրոպագանդիստ Հ. Հարությունյանը իր ղեկավարած սեմինարի պարապմունքներն անցկացնում է գործիմացորեն, քննարկում արտադրության հանգուցային հարցերը: Նա ունկնդիրներին տալիս է հանձնարարություններ, որոնց կատարման արդյունքների մասին վերջիններս զե-

կուցումներով հանդես են գալիս սեմինարի հաջորդ պարապմունքներում: Նրա ղեկավարած տնտեսագիտական սեմինարի նախկին շատ ունկնդիրներ, ինչպես, օրինակ, Ռ. Սարգսյանը, Կ. Ավետիքյանը, Ռ. Մեհրաբյանը և ուրիշներ այժմ իրենք են ղեկավարում տնտեսական գիտելիքների հիմունքներն ուսումնասիրող դպրոցներ:

Ճշգրիտ հաստոցների գործարանում ունկնդիրների սիրելին է պրոպագանդիստ Հենրիկ Ամիրբեկյանը: Արդեն հինգերորդ տարին է, ինչ նրան վստահված է պրոպագանդիստի պատվավոր գործը: Նրա ղեկավարած դպրոցի 22 ունկնդիրներն էլ լավ են կողմնորոշվում տնտեսագիտական հարցերում, իսկ պրոպագանդիստը, յուրաքանչյուր թեմա բացատրելիս, այն կապում է գործարանի, արտադրամասի աշխատողների առջև ծառացած խնդիրների հետ: «Արտադրանքի որակի բարելավման և աշխատանքի արդյունավետության բարձրացման ուղիները» թեման անցնելիս՝ նա կոնկրետ օրինակներով ունկնդիրներին համոզեց, որ ներկա պայմաններում հանգուցային եղանակով բրիգադային աշխատանքն ավելի արտադրողական է, ռացիոնալ է օգտագործվում աշխատաժամանակը, ավելի ակտիվ պայքար է տարվում խնայողության համար: Որակի մասին խոսելիս՝ պրոպագանդիստն առաջարկեց խիստ վերահսկողություն սահմանել մեխանիկական արտադրամասից ստացվող դետալների վրա, որովհետև հաճախ խոտանը գալիս է այնտեղից: Այդ առաջարկությունը կիրառվեց և պակասեց ցածրորակ դետալների հոսքը:

Կուսակցության քաղաքային կոմիտեն ուժեղացրել է օգնությունն ու հսկողությունը սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ, նրանցից պահանջում է է՛լ ավելի բարելավել կադրերի տնտեսագիտական ուսուցումը: Ուսումնական պրոցեսի ղեկավարման, զանազան կազմակերպությունների գործունեությունը կոորդինացնելու նպատակով ստեղծել ենք աշխատավորների տնտեսագիտական կրթության քաղաքային խորհուրդ: Այդ խորհուրդն զբաղվում է այն հարցով, թե ինչպես են անցնում դպրոցների ու սեմինարների պարապմունքները կազմակերպություններում, ինչպես է կատարվում ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը տեղերում: Կոորդինացնող խորհուրդներ են ստեղծված նաև բոլոր խոշոր կուսկազմակերպություններում, որոնցում ընդգրկված են տնտեսագետներ, արտադրության պետեր, առաջավոր բանվորներ:

Քաղաքային կոմիտեն, 1971 թ. հաստատել է «Միջոցառումներ հնգամյակում տնտեսագիտական կրթությունը կազմակերպելու մասին» պլանը, որի համաձայն մինչև հնգամյակի վերջը քաղաքի աշխատավորները պետք է ընդգրկված լինեն տնտեսագիտական ուսուցման սիստեմում: Կադրերի տնտեսագիտական ուսուցման հարցերը մշտապես քննարկվում են կուսքաղկոմի բյուրոյում, ակտիվի նիստերում և պլենումներում: Իսկ յուրաքանչյուր ուսումնական տարվա վերջում ամփոփվում են տնտեսագիտական կրթության արդյունքները:

Տնտեսական գիտելիքների պրոպագանդմանը մեծապես նպաստում է դասախոսական պրոպագանդան: Քաղաքային կոմիտեն տնտեսագիտական կարևոր հարցերի շուրջ կազմակերպում է դասախոսություններ, այդ աշխատանքում լայնորեն ներգրավում մանկավարժական, պոլիտեխնիկական ինստիտուտների, միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների դասախոսներին և դասատուներին: Վերջին երեք տարում տնտեսագիտական տարբեր հարցերի շուրջ աշխատավորության համար կազմակերպվել է 1250 դասախոսություն:

Լուրջ ուշադրություն ենք նվիրում տեսական կոնֆերանսների, տնտեսական վերլուծության ժամերի, հարց ու պատասխանի երեկոների անցկացմանը: Միայն վերջին երկու տարում անցկացրել ենք 16 գիտա-տեսական կոնֆերանս, որոնց թվում՝ «Տնտեսագիտական հարցերի լուսաբանումը Վ. Ի. Լենինի աշխատություններում և նրանց նշանակությունը ներկա փուլում» (քիմիական մանրաթելի գործարանում), «Ձեռնարկության կարևոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշները և շահութաբերության բարձրացման ուղիները»



(քիմիական կոմբինատ), «Բեռների շրջանառության արագացման ուղիները երկաթուղային տրանսպորտում» (երկաթուղային հանգույց), «Արդյունաբերական ձեռնարկությունների և գիտահետազոտական ինստիտուտների արդյունավետ աշխատանքի կազմակերպման հիմնական ուղիները»: Այս կոնֆերանսներում զեկուցումներով հանդես են եկել ակադեմիկոսներ Մ. Կասյանը, Ա. Առաքելյանը, քաղկոմի առաջին քարտուղար Ս. Օհանյանը, ձեռնարկությունների դիրեկտորներ, բաժինների վարիչներ: Կոնֆերանսների հանձնարարականներն արդեն կենսագործվում են ձեռնարկություններում:

Ավելի ուշագրավ է տնտեսական վերլուծության ժամերի անցկացումը քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում և առանձին արտադրամասերում: Այդ ժամերն անցնում են ինժեներա-տեխնիկական անձնակազմի և բանվորների ակտիվ մասնակցությամբ, ընդունված առաջադրանքները կրում են հիմնավորված բնույթ:

Քաղաքային կոմիտեն ակտիվ օգնություն է ցույց տալիս միութենական շատ խորհրդակցությունների հրավիրմանը, որը կարևոր նշանակություն ունի մեր կադրերի տնտեսական գիտելիքների հարստացման համար: Վերջին շրջանում քաղաքում հրավիրվել են միութենական սեմինարներ՝ «Քիմիական գիտությունների զարգացման ուղիները իններորդ հնգամյակում», «Աշխատանքի գիտական կազմակերպումը ՍՍՀՄ սարքաշինության մինիստրության ձեռնարկություններում»: Այս սեմինար խորհրդակցություններում մշակվել են կարևոր հանձնարարականներ, և այժմ դրանք հաջողությամբ կենսագործվում են:

Մեծ է տնտեսագիտական պրոպագանդայի գործում թերթի դերը: Քաղաքային «Կայծ», քիմկոմբինատի բազմատիրաժ «Քիմիագործ» թերթերում լայնորեն լուսաբանվում են տնտեսագիտական հարցերը, տպագրվում են հոդվածներ լավագույն պրոպագանդիստների, առաջավոր բանվորների աշխատանքի մասին, հրապարակվում են տեղեկատու նյութեր: Տնտեսագետները թերթերի էջերում հանդես են գալիս տարբեր հարցերի շուրջ: Հաճախակի են տպագրվում «Տնտեսական գիտելիքները բոլորին» վերտառությամբ հոդվածաշարեր:

Սակայն սխալ կլինի կարծել, թե աշխատավորների տնտեսագիտական կրթության գործում ամեն ինչ արված է: Պետք է ուղղակի ասել, որ դպրոցների և սեմինարների մի մասում պարապմունքներն անցնում են մակերեսորեն, ունկնդիրների զգալի մասը չի կարողանում վերլուծել ձեռնարկության տնտեսական գործունեությունը, հաշվարկներ կատարել, ստացած գիտելիքները կիրառել պրակտիկայում: Դեռևս անբավարար է ղեկավար աշխատողներին տնտեսական գիտելիքներով զինելու գործը: Քաղաքի առևտրի, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների կոմունիստական աշխատանքի դպրոցների գործունեությունը հեռու է բավարար լինելուց: Ոչ բոլոր տնտեսական աշխատողներն են իրենց պարտքը համարում՝ մշտապես զբաղվելու կադրերի տնտեսագիտական կրթության կարևոր գործով: Կան նաև ընդհանուր բնույթի շատ թերություններ. զգացվում է դասագրքերի պակաս, հատկապես վատ է ճյուղային տնտեսագիտության վերաբերյալ հրատարակվող գրքերի վիճակը: Մինիստրությունները ոչ միշտ են հոգում ձեռնարկություններում ուսումնական բազա ստեղծելու մասին, չեն բարձրացնում կադրերի պատասխանատվությունը: Չի կազմակերպվում տեխնիկական միջոցների և դիտողական նյութերի կենտրոնացված մատակարարումը:

Կադրերի տնտեսագիտական կրթությունը կյանքի պահանջն է: Այն արդյունավետ է միայն այն դեպքում, երբ իրենց ջանքերը սերտորեն միավորում են կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները և տնտեսական օրգանները: Քաղաքի աշխատավորության տնտեսագիտական կրթության փորձն այդ է հաստատում:

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱՆՁՆԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԸ

Պ. Ա. ՊԱՊՅԱՆ

Բախտորոշ օրեր էին Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի համար: Գործարկվում էր ևս մի նոր հզորություն՝ թեթև բենզինից քացախաթթվի ստացման համալիրը: Նոր արտադրության ղեկավարը, տեխնիկական գիտությունների թեկնածու Շահեն Հովհաննիսյանը, ինչպես ասում են, մինչև կոկորդը խրված էր գործի մեջ: Սկզբում ամեն ինչ հեշտ էր թվում, հետո հոգսերն ավելացան: Բանվորներ էին պետք, զգացվում էր և ինժեներական կադրերի պակաս: Սովորելու պահանջ ուներ թե՛ ինժեները, թե՛ բանվորը, մինչդեռ մասնագիտական գրականություն չկար: Այնուամենայնիվ, կառուցվել էր արտադրությունը, ու ամբողջ համակարգում շրջապտույտի մեջ էր դրվել ջուրը: Շուտով ջուրը պիտի փոխարինվեր բենզինով: Ինչպե՞ս պիտի դուրս գային մեծ քննությունից:

...Պայմանավորված ժամին մտա Հովհաննիսյանի աշխատասենյակը: Գրում էր, դադարեցրեց: Թուղթը մեկնեց ինձ: Կարդացի, «Թանկագին, Բենիամին Սեմյոնովիչ...»: Ո՞վ է... Որտեղի՞ց է ծանոթ այս անունը... Հետաքրքրասիրությունս չթաքցրի Շահենից:

— Իմ մոտիկ ընկերներից է,— պատասխանեց նա,— Սումգաիթում միասին ենք աշխատել:

Հիշեցի: Տասը տարի առաջ էր: Երևանից, փորձի փոխանակման նպատակով, Սումգաիթի կաուչուկի գործարան մեկնած կիրովցիներիս ընդունեց միջահասակ, սաթի պես թուխ մազերով, սև աչքերով մի մարդ՝ գործարանի կուսկոմիտեի քարտուղարի տեղակալ Բենիամին Գալուստյանը:

— Հիմա մեր կոլեկտիվից պակասում է Բենիամին Գալուստյանը,— ասաց Շ. Հովհաննիսյանը:

Դժվար չէր կռահել, որ այդ պահին Շահենի հոգում և ափսոսանք կար, և կարոտ: Այժմ ամեն մի ձեռնարկություն ձգտում է լավ կադրեր ունենալ: Այն ո՞ր գործարանը ձեռքից բաց կթողներ Բենիամինի նման ձեռներեց մասնագետին ու ակտիվ կոմունիստին: Չեն թողնի՛, չէ՛...

Ներքին մի ուրիշ ձայն էլ լավատեսորեն հուշում էր, որ Բենիամինը կգա: Նրան թույլ կտան: Որովհետև եղել է մի ժամանակ, երբ Կիրովի անվան կոմբինատը Սումգաիթի կաուչուկի գործարան է ուղարկել իր լավագույն մասնագետին՝ տաղանդավոր ինժեներ Էդգար Տեր-Ղազարյանին: Նա մենակ չգնաց, իր հետ տարավ շնորհալի մասնագետների մի ջոկատ, նրանց հետ և Բենիամին Գալուստյանին: Այսօր այնտեղ գործերը լավ են. փոխվել են պայմանները: Հիմա կադրերի կարիք է զգում Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատի նոր գործարկվող քացախաթթվի արտադրությունը: Օգնել է պետք: Սումգաիթն օգնության ձեռք կմեկնի:

Կիրովցիների այս նոր հզորությունն իր տեսակի մեջ միակն է ամբողջ Միությունում: Ստացվող արտադրատեսակները՝ քացախաթթուն, պրոպանական թթուն, մրջնաթթուն շատ անհրաժեշտ են նաև Ադրբեջանին: Դրանք դառնալու են պոլիվինիլացետատի, պոլիվինիլբուտիրալի, քիմիական մանրաթելերի, զանազան կպչանյութերի ելանյութ, որոնց անհամբերությամբ են սպասում Սումգաիթի արդյունաբերական ձեռնարկությունները:

Շահեն Հովհաննիսյանը մտաբերում է այս ամենը ու խորհում. «Մեծ օգնություն կլիներ, եթե թույլ տային...»:

Եվ այս խնդիրքը հարգվեց. Բենիամին Գալուստյանը Սումգաիթից գործուղվեց Երևանի Կիրովի անվան քիմիական կոմբինատ, նշանակվեց քացախաթթվի ստացման արտադրական համալիրի պետի տեղակալ:

* * *

Շատերին տարօրինակ թվաց, որ Բենիամին Գալուստյանն առաջին իսկ օրվանից կամովին ստանձնեց էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարի ղեկավարի պարտականությունը: Կոմպլեկտավորեց խումբը: Սեմինարի մասնակիցները համալիրի արտադրամասերի, բաժանմունքների ու հերթափոխությունների պետեր էին, ինժեներներ, տեխնիկներ, մեխանիկներ, առաջատար մասնագիտության վարպետներ: Պրոպագանդիստական աշխատանքի բազում տարիների փորձը Բենիամինին շատ բան էր սովորեցրել Սումգաիթի կաուչուկի գործարանում:

Այս անգամ էլ Գալուստյանը որոշել էր կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարում, մասնակիցների օգնությամբ, գիտական մակարդակով ուսումնասիրել համալիրի էկոնոմիկան, բոլոր տեսական հարցերը մեկնաբանել արտադրության օրինակներով: Նրա նպատակն էր՝ այդ ձևով գտնել արտադրության նեղ տեղերը, բանավեճեր սկսել հիմնական ու շրջանառու ֆոնդերի արդյունավետ օգտագործման, ինքնարժեքի, արտադրանքի որակի, աշխատանքի արտադրողականության հարցերի շուրջ, հայտնաբերել նոր ռեզերվներ ու դրանք ծառայեցնել արտադրության արդյունավետության բարձրացմանը:

Այստեղ արտադրվում է քացախաթթու, բայց նույն թեթև բենզինից գոյանում են նաև պրոպանական թթու, մրջնաթթու, կարագաթթու և ուրիշ նյութեր, որոնք մեծացնում են արտադրանքի նյութարտադրությունը: Պրոպանական թթուն ու մրջնաթթուն սպառողներ ունեցան: Իսկ մնացա՞ծը... Ի՞նչ պետք է անել արտադրության կարիքներին ծառայեցնելու համար նաև մյուս ածանցյալները, որոնք չունեն տեխնիկական կիրառություն և ոչնչացվում են հրկիզման ճանապարհով:

Այս բոլոր հարցերի լուծումը պահանջում էր ստեղծագործական մոտեցում: Դժվարություններ կային: Սակայն ամենադժվարին թվացող գործերն **անգամ դյուրին են դառնում, երբ** միավորվում են ձեռներեց մարդկանց ուժերն ու ընդունակությունները: Հարկավոր էր ավելի ընդլայնել պրոպագանդիստական աշխատանքը: Սեմինարի մասնակիցներից յուրաքանչյուրն իր կոլեկտիվն ուներ համալիրի տարբեր արտադրամասերում ու բաժանմունքներում: Նրանք միաժամանակ, որպես կոմունիստական աշխատանքի դպրոցների ղեկավարներ, հոգեվոր սնունդ էին ստանում սեմինարից ու տընտեսական գիտելիքները մասսայականացնում ներքին օղակներում, բրիգադաներում ու հերթափոխություններում: Պարապմունքներն անցկացվում էին ապարատավարների մեջ տեխնիկական բարձր ճաշակ զարգացնելու նշանաբանով: Խնդիրն այն էր, որպեսզի ամեն մի արտադրամաս ունենար բազմակողմանի զարգացած, մի քանի մասնագիտության տիրապետած մարդիկ, յուրաքանչյուր ապարատավար կարողանար աշխատել գոնե երկու բանվորական տեղում, մեծացնել սպասարկման գոտին, փոխարինել նաև բացակա ընկերոջն ու դրանով նպաստավոր պայմաններ ստեղծել բանվորական ուժի պակասը հաղթահարելու համար:

Լավ միտքը նման է առողջ սերմի: Առողջ կոլեկտիվի մեջ այն արագությամբ ծլարձակում է ու պտուղներ տալիս: Կարճ ժամանակամիջոցում ապարատավարների հաշվին ավելացավ ամբողջ համալիրի ռացիոնալիզատորների թիվը: Առաջին առաջարկությունից հետո Վ. Մելոյանը, Ա. Ալեքյանը, Ս. Գևորգյանը և ուրիշներ ներկայացրին երկրորդը, երրորդը: Ձեռնարկությանը տված հսկայական օգուտների հետ մեծանում էր նաև նորարարների վաստակը: Նյութականից ավելին բարոյական հատուցումն էր. քիչ բան չէ, երբ շարքային բանվորի անունը գրվում է ձեռնարկության տեխնիկական առաջընթացի առաջամարտիկների ցանկում: Արժեքավոր էր արտադրական մնացուկ հանդիսացող գազերը կրկնակի անգամ համակարգ մտցնելու, անընդհատ շրջապտույտի մեջ պահելու ռացիոնալիզատորական առաջարկությունը, որով հարստացվում է հումքը և արտադրանքի նյութատարությունը իջեցվում 6—7 տոկոսով: Դրանից ամենօրյա օգուտը հասավ ավելի քան 2.500 ռուբլու:

Օրինակները շատ են: Պրոպագանդիստը կարողացել է դրանցով լիցքավորել մարդկանց, պտղավորել նրանց միտքը, սովորեցնելու հետ նաև սովորել արտադրությունը լավ հասկացող, բանիմաց կադրերից:

Կոմունիստը չի կարող իր ետևից տանել կոլեկտիվը, եթե չունենա նախաձեռնություն: Նա պարտավոր է կյանքի բոլոր ոլորտներում, ինչ գործի էլ որ լինի, իր խառնվածքի մեջ զարգացնել խոսքի ու գործելակերպի միասնականությունը: Եթե պաշտոնյա է, ակտիվ կարգադրողից բացի, պետք է կարողանա լինել նաև ակտիվ գործող, գտնել դժվարությունը հաղթահարելու հեշտ ուղիները: Ստացվեց այնպես, որ անհասկանալի պատճառներով դժվարացել էր ջերմային պրոցեսների կարգավորման գործը: Առաջին հայացքից թվում էր, թե անբավարար է սառեցնող ջրի քանակը: Ի դեպ, այս արտադրության երկաթե երակներով շրջապտույտի մեջ է պահվում ժամում 5.800 խմ սառեցնող ջուր: Դա մի հորդառատ գետ է: Փորձեցին հզոր պոմպերի օգնությամբ, բարձր ճնշման տակ արագացնել ջրերի շրջապտույտի արագությունը: Օգուտ չտվեց:

Մտածեցին՝ գուցե ընկել է հումքի որակը: Պարզվեց, որ այդպես չէ: Բայց ի՞նչը կարող էր իջեցնել սարքավորումների արտադրողա-

կանությունը։ Հետևանքներն առաջ են գալիս պատճառներից, ու հիմա պատճառը մնում է անհայտ։

Ահա և պրոպագանդիստ Բ. Գալուստյանն ու մեխանիկ Ս. Դարբինյանը նկատում են, թե ինչպես ապարատավար Բ. Դումանյանը նմուշ է վերցնում ապարատներից մեկի ծորակից։ Նմուշը չի բավարարում, դատարկում է փորձանոթը, նորից վերցնում, նայում լույսի տակ և նորից դատարկում, ու այսպես շարունակ։ Շփոթվե՞լ է ապարատավարը։

— Տո՛ւր, ինքս անեմ,— ասում է Գալուստյանը ու, վերցնելով նմուշը, փորձանոթը պահում է լույսի դեմ, թափահարում պարունակությունը։

— Տեսնո՞ւմ ես։

Պարզ, թափանցիկ հեղուկի մեջ մեխանիկին ցույց է տալիս ինչ-որ մանր փոշեհատիկներ, որ արագությամբ նստվածք են տալիս փորձանոթի հատակին։

— Այդ որտեղի՞ց,— հարցնում է մեխանիկը։

— Մետաղափոշի է։ Ապարատները մաշվում են։

— Ապարատնե՞րը... Մի՞թե...

Այո՛։ Այդպես էր։ Փոքր փորձանոթում մեծ բան նկատեցին։ Այդ երևույթը կրկնվում էր նաև ապարատների մեջ։ Փոշեհատիկները նստվածք են տալիս, տարածություն զբաղեցնում, իջեցնում ապարատների ջերմափոխանակության գործակիցը։ Հակամիջոցը գտնվեց։ Սահմանվեցին ապարատների ու ջերմափոխանակիչների մաքրման նոր գրաֆիկներ։ Դա բերեց աշխատաժամանակի ու մեծ քանակությամբ էլեկտրաէներգիայի խնայողություն։ Կրճատվեց նաև ջրի ծախսը։

Այս ամենը, այնուամենայնիվ, հարցի լիակատար լուծումը չէր։ Ահա թե ինչու սեմինարի հերթական պարապմունքներից մեկում քննարկվեց արտադրաֆոնդերի և, մասնավորապես, մեքենաների ու սարքավորումների ֆոնդահատուցման հարցը։ Բանն այն է, որ ագրեսիվ նյութերի ազդեցության տակ մեքենաները ժամկետից շուտ փչանում են, առաջ բերում պարապուրդներ ու վնասներ։ Հարկավոր էր մաշվելու պրոցեսը պահել հսկողության տակ։

Ապարատներն ստուգվեցին մեկ-մեկ, որոնց մի մասը պետք է փոխվեին։ Նորերը չկային։ Դրանք պատրաստվել են Անգլիայում։ Ի՞նչ անել. պատվե՞ր ներկայացնել։ Կձգձգվեր ամիսներով։ Նախաձեռնության հեղինակները դարձյալ եղան սեմինարի կոմունիստ ունկընդիրները։ Նրանք համատեղ ուժերով մշակեցին նոր ապարատների պատրաստման հարմար եղանակ, իսկ պատվերը կատարվեց մեխանիկական արտադրամասի ու իրենց փականագործների ուժերով։ Նորը պատրաստվեց լեգիրացված ամուր մետաղից, որն ավելի կայուն է և երկարատև աշխատանքի համար հուսալի։

Հաղթարշավի ելած իններորդ հնգամյակը հրատապ խնդիրներ է առաջադրել քիմիական արդյունաբերության ձեռնարկություններին։ Հարկավոր է բազմապատկել արտադրանքի տեսակները, ձեռնարկությունները ժամկետից շուտ հասցնել նախագծային կարողության։ Այս հարցերն այստեղ արդեն լուծվել էին։ Վերջական տարում նրանց մտահոգում էր որակի բարելավման խնդիրը։

— Քացախաթթուն մենք կարող ենք դարձնել որակի պետական նշանին արժանի արտադրանք,— ասում է Բ. Գալուստյանը։

Նա համոզում էր, որ արտադրամասում դրա համար կան բոլոր նպաստավոր պայմանները։ Նրա կարծիքի հետ համաձայնում է արտադրության պետ Շ. Հովհաննիսյանը։ Ու երկու կոմունիստ ընկերներ համատեղ ուժերով մշակում են միջոցառումների մի ամբողջ շարք։ Պրոպագանդիստը չէր սխալվում, որ այս կարևոր հարցը նույնպես պետք է դնել էկոնոմիկան ուսումնասիրող տեսական սեմինարի ունկնդիրների առջև, գտնել, տեղական օրինակներով մեկնաբանել, թե որոնք են հիմնական արտադրանքի որակի բարելավման հնարավորություններն ու երաշխիքները, ի՞նչ կարելի է անել, որպեսզի կիրովցիների արտադրած քացախաթթուն լավագույնը ճանաչվի Միությունում։ Ինչպիսի՞ որակական ցուցանիշներ ունի համաշխարհային մասշտաբով տվյալ արտադրատեսակը երկրագնդի մյուս գործարաններում։ Եվ նրանք, բարձրացնելով քացախաթթվի որակը, այն ներկայացնում են ՍՍՀՄ Մինիստրների սովետի ստանդարտների պետական կոմիտե։

Դրա պատասխանը դեռ չէր ստացվել, երբ Շ. Հովհաննիսյանին առաջարկվեց աշխատանքի անցնել Երևանի վիտամինային պրեպարատների գործարանում՝ գլխավոր ինժեների պաշտոնով։ Աշխատանքային ընկերները նորից բաժանվեցին։ Հարկավոր էր կատարել կադրերի նոր տեղաշարժեր։ Ռեզերվում դարձյալ կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի մասնակիցներն էին։ Բ. Գալուստյանը առաջ քաշվեց ու նշանակվեց արտադրության պետ, նրա տեղակալը դարձավ Վ. Դայանը, արտադրամասի պետը՝ Ֆ. Մարկոսյանը։

Կոլեկտիվի եռանդը կրկնապատկվեց, երբ հեռագիր ստացվեց, որ թթվագործների ներկայացրած արտադրանքն արժանացել է որակի պետական նշանի։ Դա կարևոր իրադարձություն էր կոմբինատի համար։ Ձեռնարկությունը թողարկում է մի քանի տասնյակ արտադրատեսակներ, ու դրանց մեջ առաջինը պետական նշանի է արժանանում քացախաթթուն։ Դա միաժամանակ պարտավորեցնող էր, որին արտադրության մարդիկ պատասխանեցին կոնկրետ գործերով։ Վճռական տարվա երրորդ եռամսյակում նրանք որակի պետական նշանի արժանացրին նաև արտադրանքի մյուս տեսակը՝ մրջնաթթուն։

1974 թվականն է։ Արտադրության մարդիկ նայում են անցած ճանապարհին։ Տարեկան պլանը կատարվել է ժամկետից 18 օր շուտ, տնտեսվել են մի քանի հարյուր տոննա հիմնական հումք, մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, գոլորշի, օժանդակ նյութեր։ Այդ բոլորը հիմք են դարձել որոշիչ տարվա հանդիպական պլանի համար։ Խնդիր դրվեց երկրին պլանից դուրս տալ 200 տոննա արտադրանք, յուրաքանչյուր տոննայի թողարկման ընթացքում ծախսերը կրճատել երկու ռուբլով, տնտեսել 11 կվտ-ժամ էլեկտրաէներգիա, կես լիտր բենզին, 1,5 տոկոսով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Խոստումնալից է կոլեկտիվի առաջընթացը հանդիպական պլանի կատարման համար մղվող մրցապայքարում։ Անցած չորս ամսվա պլանը նա կատարեց 110 տոկոսով և մեկ տոննա արտադրանքի ծախսերը, երկուսի փոխարեն, կրճատեց 10 ռուբլով։ Ոգևորված ՍՄԿԿ Կենտկոմի՝ կուսակցությանն ու ժողովրդին ուղղված դիմումով, աշխատանքի հիմքում դնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի «1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշումը, արտադրական համալիրի կոլեկտիվը անում է ամեն ինչ՝ 1974 թվականը իսկապես որոշիչ տարի դարձնելու, արտադրության առաջընթացն ապահովելու համար։ Այդ պայքարի ավանգարդում ընթանում են կոմունիստները և նրանց թվում՝ Բենիամին Գալուստյանը։

# ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՏԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՆԽԱՏԵՍՄԱՆ ՄԱՍԻՆ*

**Շ. Ս. ՄԱՐԳԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*Մեր երկրի տնտեսական զարգացման առաջընթացն ու բնակչության բարեկեցության մակարդակի բարձրացումը հիմնականում պայմանավորված են ազգային եկամտի աճի տեմպերով և հատկապես դրա բացարձակ ծավալի աճով։ Վերջինիս կանխատեսումը կարելի է կատարել դրա աճի հնարավոր տեմպերն առաջիկայում որոշելու միջոցով։*

*Ազգային եկամտի արտադրության աճի տեմպերի նախորդ ժամանակաշրջանի (էքստրապոլյացիան) մեթոդապես սխալ է, քանի որ այս դեպքում անտեսվում են գիտատեխնիկական առաջընթացի ընձեռած հնարավորություններն ազգային եկամտի աճի բարձր տեմպեր ապահովելու գործում։*

*Ազգային եկամտի աճի տեմպերը կարելի է կանխատեսել նաև նորմատիվային եղանակով, ելնելով սպառման որոշակի մակարդակ ապահովելու նպատակային ֆունկցիայից։ Այդ դեպքում նկատի պետք է ունենալ բնական, աշխատանքային, տեխնիկական ու ֆինանսական անհրաժեշտ ռեսուրսները, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության տեմպերն ու արտադրամիջոցների խնայողության աստիճանը, որոնք կապահովեն սպառման նախատեսվող մակարդակը կանխատեսվող ժամանակաշրջանում։ Բացառված չէ, որ այդ դեպքում խզում առաջանա նախատեսվող սպառման մակարդակի և այն ապահովող միջոցների միջև։ Այլ կերպ ասած, սպառման որոշակի մակարդակ ապահովելու համար միջոցների և ուղիների ռեալ հնարավորությունները կարող են անտեսվել, որի հետևանքով նպատակային ֆունկցիան կմնա լոկ բարի ցանկություն։ Հետևաբար, ազգային եկամտի աճի աղբյուրների վերլուծությունը և դրանցից յուրաքանչյուրի ընձեռած հնարավորությունների օգտագործումը պետք է դրվի որոշակի նպատակային ֆունկցիա ընտրելու հիմքում։ Այսինքն՝ կանխատեսման նորմատիվային եղանակն այս դեպքում կզուգորդվի ազգային եկամտի աճն ապահովող առանձին գործոնների ու աղբյուրների վերլուծության հետ։ Դրանով իսկ առավել չափով կհաղթահարվի նպատակային ֆունկցիայի (տվյալ դեպքում որոշակի մեծության ազգային եկամուտ արտադրելու հիման վրա սպառման նախատեսվող մակարդակի) և դրան հասնելու միջոցների միջև խզման հնարավորությունը, որը կարող է առաջանալ զուտ նորմատիվային մեթոդով կանխատեսման ժամանակ։*

* Տպագրվում է հարցադրման կարգով. Խմբ.,



*Ազգային եկամտի կանխատեսման համար դրա մեծությունն ու աճի տեմպերը պայմանավորող ցուցանիշները բնութագրելիս, անշուշտ, նկատի է առնվում նաև բազիսային ժամանակաշրջանում դրանց ընթացքը և այն պայմանավորող գործոնների փոխադարձ կապը։ Միաժամանակ պարզ է, որ նախորդ ժամանակաշրջանի զարգացման տենդենցները, առանձին ցուցանիշների փոխադարձ կապի իներցիան, որոշակիորեն փոխվում են հեռանկարում տնտեսական զարգացման այս կամ այն նպատակային ֆունկցիա իրականացնելու համար։ Այս տեսակետից վճռական նշանակություն է ստանում կանխատեսվող ժամանակաշրջանում որոշակի սոցիալ-տնտեսական խնդիրների առաջադրումը, որոնց լուծման նպատակով որոշակի մեծության ազգային եկամտի արտադրությունը դառնում է անհրաժեշտ։ Այս դեպքում ազգային եկամտի աճն ապահովող աղբյուրների ու ցուցանիշների նախորդ ժամանակաշրջանի տենդենցներն օգտագործվել չեն կարող, այլ դրանց կանխատեսումը կկատարվի որոշակի նպատակային ֆունկցիա իրականացնելու տեսանկյունից։*

*Այսպիսով, գիտականորեն հիմնավորված կանխատեսումներ կատարելու, հատկապես ազգային եկամտի կանխատեսման համար, հույժ կարևոր նշանակություն ունի սոցիալ-տնտեսական այն խոշոր խնդիրների առաջադրումը, որոնք լուծվելու են հեռանկարում։ Դրանք մեծապես կպայմանավորեն ազգային եկամտի աճի տեմպերն ու ծավալը կանխատեսվող հեռանկարում։*

*Կանխատեսվող ժամանակաշրջանում հուժկու վերելք է կատարվելու բնակչության բարեկեցության մակարդակում, պայմանով, որ այդ ժամանակաշրջանի վերջում բնակչության անձնական սպառումը հիմնականում իրականացվի գիտականորեն հիմնավորված ռացիոնալ նորմաներով։*

*Համակողմանիորեն զարգանալու են արտադրաուժերը, անհամեմատ բարձրանալու է հասարակական արտադրության արդյունավետությունը և ազգային եկամտի արտադրությամբ ինչպես մեկ շնչի, նմանապես և մեկ աշխատողի հաշվով՝ կանխատեսվող ժամանակաշրջանի վերջում Հայկ. ՍՍՀ մերձենալու է ՍՍՀՄ միջին ցուցանիշին։*

*Արմատապես բարելավվելու է արտադրության ճյուղային կառուցվածքը, ելնելով հանրապետությունում բնական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, հումքի կոմպլեքսային մշակման և միջավայրը պաշտպանելու ու վերականգնելու շահերից։*

*Գնալով խորանալու են արտադրության հետագա մասնագիտացումը և ժողովրդատնտեսության կոմպլեքսային զարգացումը։ Կատարելագործվելու են միջհանրապետական տնտեսական կապերը և առավել ցայտուն է դրսևորվելու հանրապետության տեղն ու դերը աշխատանքի համամիութենական բաժանման մեջ։*

*Արտադրության և ազգային եկամտի ու հասարակական ամբողջական արդյունքի, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը գերազանցելու են միութենական համապատասխան միջին ցուցանիշներին, կանխատեսվող ժամանակաշրջանի վերջում երկրի մասշտաբով այդ ցուցանիշների մակարդակով ՍՍՀՄ միջինին մերձենալու ու հավասարվելու և հետագայում դրանց գերազանցելու միտումով։*

*Հասկանալի է, որ վերոհիշյալ խնդիրների լուծումն առաջին հերթին ունի համամիութենական նշանակություն, և միայն ՍՍՀՄ մասշտաբով դրանց կենսագործումը հնարավորություն կընձեռի լուծելու միութենական հանրապետությունում հարուցվող խնդիրները։*

*Ի դեպ՝ նշենք, որ հանրապետության էկոնոմիկայի զարգացման մի շարք առանձնահատկություններ ուրույն մոտեցում են պահանջում կանխատեսումներ կատարելիս։ Այսպես, եթե ուզած հանրապետությունում բնակչության բարձր կենսամակարդակ ստեղծելու պրոբլեմն առաջին հերթին կախված է այդ խնդիրը երկրի մասշտաբով լուծելուց, ապա բնակչության աճի, զբաղվածության, կրթության, կենսամակարդակների բնագավառներում հանրապետությունների միջև առկա տարբերություններն առանձնահատուկ խնդիրներ են հարուցում այդ բնագավառների կանխատեսման առջև։ Այդ առանձնահատկու-*

թյունները բխում են նաև տվյալ հանրապետության բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման ու արտադրության կառուցվածքի կատարելագործման, հանույթային ու մշակող արտադրության հարաբերակցության փոփոխության և արտադրության արդյունավետության բարձրացման բազմաթիվ այլ գործոնների բնույթից։ Դրանք էլ, վերջին հաշվով, էկոնոմիկայի հեռանկարում պայմանավորում են զարգացման մակարդակը բնութագրող այնպիսի սինթետիկ ցուցանիշի աճի տեմպերը, ծավալն ու կառուցվածքը, որպիսին ազգային եկամուտն է։

Մասնավորի և ընդհանուրի դիալեկտիկական կապի ու պայմանավորվածության փոխհարաբերության մեջ հեռանկարային ժամանակաշրջանի համար կանխատեսումներ մշակելիս, մեր կարծիքով, ելակետ պետք է ունենալ մեթոդապես կարևոր նշանակություն ունեցող այն հարցադրումը, ըստ որի՝ նախ անհրաժեշտ է ճշգրտել ու սահմանել տնտեսական, սոցիալական ու քաղաքական կարևոր նշանակություն ունեցող խնդիրները, այսինքն՝ այն ընդհանուր հարցերը, որոնք պետք է լուծվեն զարգացման տվյալ փուլում։ Այնուհետև, ելնելով այդ խնդիրների լուծման պահանջից, կարելի է գիտականորեն հիմնավորված կանխատեսումներ կատարել արտադրության զարգացման, ճյուղային կառուցվածքի փոփոխության, այդ ճյուղերի աճի և դրանց ու ժողովրդական տնտեսության զարգացումը բնութագրող կարևոր ցուցանիշների վերաբերյալ։ Իհարկե, այդ պրոբլեմների լուծման նյութական հիմքը, ռեալ բազան, տեխնիկական պրոգրեսն է։ Ելնելով առաջիկա ժամանակաշրջանի տնտեսական, քաղաքական ու սոցիալական խնդիրներից, կարելի է կանխատեսել առանձին ճյուղերի զարգացման հեռանկարն ու արտադրության կառուցվածքի հնարավոր փոփոխությունները։ Սակայն, առանձին ճյուղերի զարգացման կանխատեսումը, որը կատարվում է անկախ առաջադրվող սոցիալ-տնտեսական պրոբլեմներից, կարող է հանգեցնել լուրջ սխալների։ «...ով ձեռք է զարկում մասնավոր հարցերին առանց ընդհանուր հարցերը նախապես լուծելու, նա անխուսափելիորեն ամեն քայլափոխում իր համար անգիտակցորեն «դեմ է առնելու» այդ ընդհանուր հարցերին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 12, էջ 599)։

Մեթոդական առումով կանխատեսման վերաբերյալ ունենալով նման մոտեցում, պարզ կդառնա, որ լուծման համար առաջադրվող սոցիալ-տնտեսական գլխավոր պրոբլեմները նախ՝ իրենց արտահայտությունը կարող են գտնել էկոնոմիկայի զարգացումը բնութագրող ամենաընդհանուր ցուցանիշներում։ Այդպիսի ցուցանիշներից է նաև ազգային եկամուտը, որի աճի տեմպերի, ծավալի ու կառուցվածքի կանխատեսումը անհրաժեշտ է մի կողմից նախատեսվող սոցիալ-տնտեսական խնդիրները լուծելու, մյուս կողմից՝ արտադրության ճյուղային կառուցվածքի կատարելագործման միջոցառումներ մշակելու համար։

Ասվածից հետևում է, որ հեռանկարում լուծման համար առաջադրված սոցիալ-տնտեսական խնդիրները կատարելու նպատակով անհրաժեշտ է կանխատեսել ազգային եկամտի համապատասխան ծավալը, որից հետո նաև դրա ճյուղային կառուցվածքը։ Այնուհետև դրանք հիմք կարող են հանդիսանալ աշխատանքային ռեսուրսներն ու կապիտալ ներդրումները արտադրության ճյուղերի միջև բաշխելու վերաբերյալ կանխատեսումներ կատարելու համար։ Նման հերթականությամբ ժողովրդական տնտեսության զարգացման ցուցանիշների կանխատեսումը հնարավորություն կընձեռի, որոշակի նպատակային ֆունկցիա իրականացնելու համար, էկոնոմիկայի առաջընթացն ապահովող սինթետիկ ցուցանիշների ճշգրիտ հաշվարկներ կատարել։

Գիտականորեն հիմնավորված կանխատեսումներ կատարելու նպատակով այդպիսի մեթոդական ելակետը չի ժխտում միութենական հանրապետության էկոնոմիկայի զարգացման առանձնահատկություններից բխող մի շարք նկատառումներ հաշվի առնելու անհրաժեշտությունը։ Դեռ ավելին, միութենական հանրապետության մասշտաբով հիմնավորված կանխատեսումներ կարելի է կատարել միայն այդ առանձնահատկություններն առավելապես հաշվի առնելով։ Օրինակ, այժմ հասարակական արտադրության աճի ու կառուցվածքի փոփոխությունն ըստ սպառման դինամիկայի ու կառուցվածքի ավելի ու ավելի մեծ



չափով է կատարվում։ Դա նշանակում է, որ բնակչության սպառած նյութական բարիքների ծավալի ու կառուցվածքի կանխատեսումը կարևոր նախադրյալ է արտադրության աճի և ճյուղային կառուցվածքի կանխատեսման համար։ Ողջ երկրի մասշտաբով ժողովրդական սպառումն առավել մեծ չափով է դրսևորվում որպես տնտեսական աճի կարևոր գործոն, արտադրության զարգացման նախադրյալ։

Այս տեսակետից սպառումը միաժամանակ սոցիալիստական ընդլայնված վերարտադրության տեմպերն ու համամասնությունները կանխատեսելու կարևոր պայմաններից մեկն է։ Այժմ, երբ աստիճանաբար ավելի է հեշտանում հաշվարկել, թե յուրաքանչյուրի սպառման միջինը որքան է, ամենևին դժվար չէ արտադրությունը կարգավորել պահանջմունքներին համապատասխան (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 535), անհամեմատ մեծացել է սպառման դերն ու նշանակությունը արտադրության զարգացման աճի ու կառուցվածքի փոփոխության կանխատեսման համար։

Վերոհիշյալ հանգամանքն առաջին հերթին կարևոր նշանակություն ունի երկրի մասշտաբով արտադրության զարգացումը կանխատեսելու համար։ Միութենական հանրապետությունում բնակչության սպառման մակարդակն ու կառուցվածքը միշտ չէ, որ պայմանավորում են արտադրության մեջ հարուցվող համապատասխան փոփոխությունները։ Դրա պատճառն այն է, որ միութենական հանրապետությունում բնակչության սպառման ծավալն ու կառուցվածքն արտադրության զարգացման ու կառուցվածքի փոփոխության կարևոր պայման լինելով հանդերձ, վերջին հաշվով որոշվում է ողջ երկրի արտադրության աճի ու կառուցվածքի փոփոխություններով։ Վերջինիս մեջ որոշակի խնդիրներ է դրվում նաև տվյալ հանրապետության արտադրության աճի ու կառուցվածքի փոփոխության համար։

Նշված պրոբլեմները և առաջին հերթին միութենական հանրապետությունում արտադրված ազգային եկամտի ծավալի ու աճի տեմպերի կանխատեսման հարցերը, սերտորեն առնչվում են հանրապետություններում տնտեսական զարգացման մակարդակների համահարթման բարդ խնդրի հետ։ Մի խնդիր, որը ենթադրում է հանրապետություններում սպառման ծավալի ու կառուցվածքի համահարթում, դրանցում որոշ տարբերությունների առկայությամբ հանդերձ։ Մինչդեռ տնտեսական շրջաններում արտադրության զարգացման մակարդակների և հատկապես ճյուղային կառուցվածքի տարբերություններն ավելի ակնառու են։ Բանն այն է, որ սպառման ծավալի ու կառուցվածքի տարբերությունների համահարթման բնագավառում առաջնակարգ նշանակություն ունի ՍՍՀՄ արտադրության զարգացման մակարդակը, որի հիման վրա կենսագործվում է բնակչության բարեկեցության բարձրացման համընդհանուր ծրագիրը։ Իսկ առանձին հանրապետություններում արտադրության զարգացման մակարդակը և հատկապես ճյուղային կառուցվածքն արտահայտում են իրենց բնա-կլիմայական պայմանների, բնական ու աշխատանքային ռեսուրսների, նույնիսկ ազգային սովորույթների ու տրադիցիաների տարբերությունների ազդեցությունը։

Այս ամենից հետո դժվար է համաձայնել որոշ տնտեսագետների այն կարծիքին, ըստ որի, միութենական հանրապետությունների զարգացման մակարդակների համահարթման պրոբլեմը հիմնականում հանգեցվում է դրանցում սպառման մակարդակների ու կառուցվածքի հավասարեցմանը։ Կարծում ենք, որ սպառման մակարդակների ու կառուցվածքի համահարթման հիմնական պայմանը տվյալ տնտեսական շրջանի արտադրության զարգացման մակարդակն է։ Հանրահայտ է, որ այն հանրապետություններում, ուր արտադրության զարգացման մակարդակը բնութագրող հիմնական ցուցանիշները բարձր են, համեմատաբար բարձր է նաև բնակչության կենսամակարդակն ու սպառման ծավալը։ Իհարկե, սպառման հասարակական ֆոնդերն ու երկրի մասշտաբով բնակչության կենսամակարդակը բարձրացնելու համընդհանուր միջոցառումները մեծ չափով նպաստում են տարբեր հանրապետություններում ու շրջաններում բնակչության սպառման մակարդակների հավասարեցմանը։ Սա-

կայն այդ միջոցառումները չեն կարող լիովին վերացնել միութենական հանրապետությունների արտադրության զարգացման մակարդակներով պայմանավորված դրանցում եղած սպառման մակարդակների տարբերությունը:

Ահա թե ինչու սպառման ծավալի ու կառուցվածքի տերիտորիալ տարբերությունների վերացման գլխավոր պայմանը տնտեսական շրջաններում՝ արտադրության զարգացման մակարդակների տարբերությունների համահարթումն է: Ընդ որում այդ տարբերությունն արտահայտվում է ոչ թե արտադրության ճյուղային կառուցվածքով, կամ առանձին արտադրատեսակների թողարկման ծավալով, այլ, առաջին հերթին, տնտեսական զարգացման մակարդակը բնութագրող սինթետիկ ցուցանիշներով, այդ թվում հատկապես ազգային եկամտի բացարձակ ծավալով ու հարաբերական մեծություններով: Դա նշանակում է, որ միութենական հանրապետությունում հեռանկարային զարգացման կանխատեսումներ կատարելիս, բնակչության բարեկեցության բարձրացման, կամ սպառման որոշակի նպատակային ֆունկցիա կենսագործելու համար, նախ պետք է ելնել այն ռեալ հնարավորությունից, որ կարող է ձեռք բերվել ոչ թե օգտագործված ու սպառված, այլ առաջին հերթին արտադրված ազգային եկամտով: Հատկապես դա վերաբերում է զարգացման արդեն որոշակի բարձր մակարդակ ունեցող տնտեսական շրջաններին ու միութենական հանրապետություններին, որոնցում արտադրված ազգային եկամուտը գերազանցում, կամ աստիճանաբար գերազանցելու է արտադրվածին:

Միաժամանակ անհրաժեշտ է նկատել, որ միութենական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների համահարթման պրոբլեմի մեխանիկորեն ըմբռնման ամեն մի փորձ անիմաստ է: Հարցի էությունը դրանց արտադրաուժերի զարգացման մակարդակի, բնակչության կենսամակարդակի ու սոցիալական կառուցվածքի առկա տարբերությունների վերացումն է: Իսկ բոլոր և ամեն տեսակի տարբերությունների վերացման մասին խոսելն անգամ ավելորդ է: Տնտեսական շրջանների զարգացման մակարդակների միջև որոշակի տարբերություններ միշտ էլ կլինեն: «Տարբեր երկրների, մարզերի և նույնիսկ վայրերի միջև միշտ պիտի գոյություն ունենա կենսապայմանների որոշ անհավասարություն, որը կարելի կլինի հասցնել մինիմումի, բայց ոչ երբեք ամբողջովին վերացնել: Ալպերի բնակիչները միշտ էլ ունենալու են այլ կենսապայմաններ, քան դաշտավայրում ապրողները» (Կ. Մարքս, Ընտիր երկեր երկու հատորում, Երևան, 1941, հ. 2, էջ 591):

Հանրապետությունների ժողովրդական տնտեսության զարգացման մակարդակը բնութագրող ամենաընդհանուր և կարևոր ցուցանիշներից է ազգային եկամուտը, որի ծավալի, աճի տեմպերի ու հարաբերական մեծությունների (մեկ շնչի, մեկ աշխատողի հաշվով) կանխատեսման համար անհրաժեշտ է նկատի ունենալ վերը շարադրված մեթոդոլոգիական սկզբունքները: Հակառակ դեպքում հեռանկարային զարգացման կանխատեսումների ամեն փորձ հեռու կլինի գիտական հիմքից:

Ելակետ ունենալով վերոհիշյալ մեթոդոլոգիական սկզբունքները, կանխատեսվել է հանրապետության ազգային եկամտի արտադրության ընթացքը: Ընդ որում, ազգային եկամտի բարձր տեմպերով աճի կարևոր պայման է՝ հանրապետությունում բնական ու աշխատանքային համապատասխան ռեսուրսների առկայությունը: Բնական ռեսուրսների առկայությունը և հատկապես հանքային հումքի հետագա կոմպլեքս օգտագործումը, ինչպես նաև արհեստական հումքի և նյութերի մեծ չափերով արտադրության կազմակերպումը, ռեալ հնարավորություններ են ընձեռում ազգային եկամտի արտադրության աճի բարձր տեմպեր ապահովելու համար:

Ազգային եկամտի արտադրության աճի երկու գլխավոր աղբյուրները՝ նյութական արտադրության մեջ զբաղվածների քանակը և աշխատանքի արտադրողականության աճը, ապահովում են ազգային եկամտի ծավալի աճի, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանին համապատասխան բարձր տեմպեր:

Կանխատեսվող ժամանակաշրջանում, երկրում և Հայկական ՍՍՀ-ում



(նախկինի համեմատությամբ), բնակչության, այդ թվում և նյութական արտադրության մեջ զբաղվածների աճի տեմպերը որոշակիորեն կրճատվելու են: Սակայն մեր հանրապետության համապատասխան ցուցանիշները բարձր կմնան միութենական միջին ցուցանիշներից: Ուստի, Հայկական ՍՍՀ-ում նյութական արտադրության ոլորտում զբաղվածների ավելացման հաշվին, ազգային եկամտի աճի համեմատաբար նպաստավոր պայմաններ կան ՍՍՀՄ համեմատությամբ: Սակայն վերլուծությունները ցույց են տալիս, որ ինչպես երկրի, այնպես էլ Հայկական ՍՍՀ նյութական արտադրության մեջ զբաղվածների ավելացմամբ, առաջիկայում անհնար է ապահովել ազգային եկամտի աճի բարձր տեմպերը: Մեր հաշվարկներով, եթե առաջիկայում ազգային եկամտի աճն ապահովվի միայն արտադրության մեջ զբաղվածների թվի ավելացմամբ, ապա մեկ շնչի հաշվով այդ ցուցանիշներն աստիճանաբար կնվազեն (քանի որ բնակչության և ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների աճը գերազանցելու է արտադրության ոլորտում զբաղվածների աճին) և անիմաստ կդառնա բնակչության բարեկեցության բարձրացման ու սոցիալ-տնտեսական առաջընթացի ամեն մի պլան: Հեռանկարում ազգային եկամտի աճի վճռական գործոնի՝ աշխատանքի արտադրողականության դերն աստիճանաբար մեծանում և բացարձակ նշանակություն է ստանում: Բազմաթիվ ճյուղերում արտադրանքի աճն առաջիկայում ստացվելու է միայն կամ գերազանցապես աշխատանքի արտադրողականության հաշվին: Այդ գործոնը վճռական նշանակություն ունի նաև ՀՍՍՀ արտադրության կոմպլեքսային զարգացման ու մասնագիտացման խորացմամբ՝ նրա էկոնոմիկայի հետագա աճի, ազգային եկամտի արտադրության ավելացման հաշվին բնակչության կենսամակարդակի առավել բարձրացման համար:

Հաշվումները ցույց են տալիս, որ հանրապետությունում կանխատեսվող ժամանակաշրջանում ազգային եկամտի աճի ավելի քան 80 տոկոսն ստացվելու է աշխատանքի արտադրողականությունից: Հիմնականում այդ գործոնի հաշվին էլ կկատարվի ազգային եկամտի ծավալի հսկայական աճը:

Սակայն այդ աճն ինքնին դեռևս արտադրության զարգացման մակարդակի և բնակչության բարեկեցության աստիճանի վկայություն չէ: Միութենական հանրապետություններում բնակչության վերարտադրության ու ազգային եկամտի վերաբաշխման մոմենտները միմյանցից զգալիորեն տարբերվում են: Այդ պատճառով տնտեսական շրջանում մեկ շնչի հաշվով արտադրված ազգային եկամուտը դեռևս տվյալ շրջանում բնակչության կենսամակարդակի որոշման ցուցանիշ լինել չի կարող: Բնակչության կենսամակարդակի հարցերը որոշվում են առաջին հերթին ոչ թե տվյալ շրջանում արտադրված, այլ սպառված ազգային եկամտի մեծությամբ:

ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ, հանրապետության արտադրության աճի տեմպերը միշտ էլ բարձր են եղել և դեռևս բարձր կմնան կանխատեսվող հեռանկարում: Ուստի, արտադրության զարգացման մակարդակը բնութագրող հիմնական ցուցանիշներով Հայկական ՍՍՀ աստիճանաբար մերձենալու և հավասարվելու է ՍՍՀՄ համապատասխան ցուցանիշներին, այդ թվում մեկ շնչի և մեկ աշխատողի հաշվով արտադրված ազգային եկամտին:

Նախօրոք նշենք, որ այդ ցուցանիշներով վերլուծություններ կատարելիս նկատի պետք է ունենալ երկու կարևոր հանգամանք: Մեկ շնչի հաշվով արտադրված ազգային եկամտի համեմատությունները, որոնք կատարվում են առանց բնակչության սեռա-հասակային կազմի և նյութական արտադրության մեջ զբաղվածների թվի համեմատական վերլուծությունների, սխալ եզրակացությունների կարող են հանգեցնել: Հայտնի է, որ ՀՍՍՀ բնակչության կազմում, ՍՍՀՄ համեմատությամբ, անաշխատունակ տարիք ունեցողների տեսակարար կշիռը զգալիորեն բարձր է: Պարզ է, որ այդ հանգամանքը ՍՍՀՄ համեմատությամբ իջեցնում է ՀՍՍՀ մեկ շնչի հաշվով արտադրված ազգային եկամտի մեծությունը: Հետևապես, մեկ շնչի հաշվով արտադրված ազգային եկամտի ցու-

ցանիշով համեմատություններ ու վերլուծություններ կատարելիս, անպայման նկատի պետք է ունենալ բնակչության կազմի տարբերությունները:

Հետևաբար, ավելի ճիշտ կլինի համեմատություններն ու վերլուծությունները կատարել նյութական արտադրության մեջ մեկ աշխատողի հաշվով արտադրված ազգային եկամտի ցուցանիշով: Հիրավի, նյութական արտադրության մեջ մեկ աշխատողի հաշվով արտադրված ազգային եկամտի ցուցանիշով ՍՍՀՄ և ՀՍՍՀ տարբերություններն ավելի փոքր են, քան մեկ շնչի հաշվով ցուցանիշների տարբերությունն է:

Երկրորդ կարևոր հանգամանքը, որն անհրաժեշտ է նկատի ունենալ նման վերլուծություններ կատարելիս, դա վերոհիշյալ ցուցանիշների վրա արտադրության ճյուղային կառուցվածքի ազդեցության բացահայտումն է: Թե ինչպիսի ազդեցություն ունի արտադրության ճյուղային կառուցվածքն ազգային եկամտի մեծության վրա, սա ուրույն հետազոտության նյութ է: Նշենք միայն, որ այս տեսակետից մեր հանրապետության արտադրության ճյուղային կառուցվածքը նպաստավոր է մեկ աշխատողի հաշվով ազգային եկամտի արտադրության ցուցանիշով առաջավոր լինելու համար: Նախ, ազգային եկամտի արտադրության մեջ արդյունաբերության տեսակարար կշիռն ավելի բարձր է, քան ՍՍՀՄ-ում, իսկ արտադրված ազգային եկամտի հաշվարկման մեթոդիկային համապատասխան այդ ճյուղում իրացվում է նաև, օրինակ, գյուղատնտեսության մեջ ստեղծված նոր արժեքի մի մասը: Բացի այդ, հանրապետության արդյունաբերության ճյուղային կառուցվածքում ավելի բարձր է թեթև ու սննդի արդյունաբերության տեսակարար կշիռը, որոնցում հիմնականում իրացվում է ազգային եկամտի կարևոր բաղկացուցիչ մասը՝ շրջանառության հարկը:

Վերլուծությունները ցույց են տալիս, որ նյութական արտադրության մեջ, մեկ աշխատողի հաշվով արտադրված ազգային եկամտի ցուցանիշով միութենական միջին ցուցանիշին հավասարվելու խնդիրն առաջիկայում պայմանավորված է աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակի ստեղծմամբ: Նյութական արտադրության մեջ մեկ աշխատողի արտադրած ազգային եկամտի արտադրությամբ ՍՍՀՄ միջին ցուցանիշին հավասարվելը հնարավորություն կընձեռի ավելի երկարատև հեռանկարում մեկ շնչի հաշվով ևս ՍՍՀՄ մակարդակին հավասարվելու և այնուհետև գերազանցելու համար: Հասկանալի է, որ այդ կարող է ձեռք բերվել միայն ՍՍՀՄ համեմատությամբ աշխատանքի արտադրողականության առավել բարձր մակարդակի դեպքում: Վերոհիշյալ խնդիրն ավելի երկարատև հեռանկարում կարող է դիտվել, որպես ՀՍՍՀ արտադրության զարգացման նպատակային ֆունկցիա:

Կանխատեսվող հեռանկարի վերջում մեկ շնչի և հատկապես արտադրության մեջ մեկ աշխատողի կողմից արտադրված ազգային եկամտի ցուցանիշով ՍՍՀՄ մակարդակին մերձենալու խնդիրը ենթադրում է, որ հանրապետությունում ազգային եկամտի աճի տեմպերն այդ ընթացքում ավելի մեծ չափով են գերազանցելու ՍՍՀՄ ազգային եկամտի աճի տեմպերին, քան բնակչության ու արտադրության աշխատողների աճի տեմպերի տարբերություններն են: Այլ խոսքով, ողջ երկրի համեմատությամբ, հանրապետության ազգային եկամտի աճի ավելի բարձր տեմպերը հավելուրդով կծածկեն Միության համեմատությամբ բնակչության և արտադրության աշխատողների աճի տեմպերի նրա գերազանցությունը:

Ազգային եկամտի արտադրության աճի կանխատեսումը ցույց է տալիս, որ մեկ շնչի և հատկապես մեկ աշխատողի հաշվով արտադրված ազգային եկամտի տեսակետից, հանրապետությունն աստիճանաբար մոտենում և (հեռանկարի վերջում) ընդհուպ մերձենում է համամիութենական համապատասխան ցուցանիշներին: Դա ձեռք է բերվելու հանրապետության արտադրության արդյունավետության բարձրացմամբ, գիտատեխնիկական առաջընթացով և հասարակական աշխատանքի արտադրողականության հուժկու վերելքով:

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՈՒՑԻՉԸ

**ԱԶԱՏՈՒՀԻ ՍԱՌԱՖՅԱՆ**
Գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության հանրապետական խորհրդի նախագահ

Մեր երկրում գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը բնութագրվում է ո՛չ միայն արտադրության մեջ կոնստրուկտորական և տեխնոլոգիական սկզբունքորեն նոր մշակումների ստեղծմամբ, այլ նաև սոցիալական ասպեկտով: Բազմաթիվ հասկացություններ, այդ թվում և ստեղծագործությունը, ընդլայնվել են, ձեռք բերել նոր որակ ու նշանակություն: Այսօր արդեն մենք խոսում ենք գիտնականի, ինժեների և բանվորի գործունեության ստեղծագործական բնույթի մասին: Այդ իմաստով էլ ՍՄԿԿ XXIV համագումարը, մեծ ուշադրություն նվիրելով գիտատեխնիկական հեղափոխությանը, նշեց. «Լայնորեն զարգացնել աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը արտադրության տեխնիկական կատարելագործման ասպարեզում, ըստ ամենայնի նպաստել ռացիոնալիզացիայի և գյուտարարության աշխատանքի բարելավմանը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 323):

Տարբեր մասնագիտությունների տեր մարդկանց մասսայական ու ակտիվ մասնակցությունը տեխնիկական ստեղծագործությանը գյուտարարական և ռացիոնալիզատորական հզոր շարժում առաջացրեց երկրում, որի շնորհիվ ժողովրդական տնտեսությունում լայնորեն օգտագործվեցին գիտական հայտնագործումները, գյուտերն ու ռացիոնալիզատորական առաջարկությունները: Դրանք օժանդակեցին գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, հասարակական արտադրության բարձրացմանը, հնարավորություն ընձեռեցին ստեղծելու մեքենաներ, նյութեր և տեխնոլոգիական պրոցեսներ, որոնք իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով չեն զիջում հայրենական և համաշխարհային լավագույն նվաճումներին:

Հայաստանի նորարարները, կատարելով կուսակցության XXIV համագումարի որոշումները, ստեղծագործական իրենց ողջ ուժերը մոբիլիզացրին գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա արտադրության զարգացման բարձր տեմպեր ապահովելու համար: Իններորդ հնգամյակի անցած երեք տարիներին ներդրված գյուտերի թիվը, նախորդ հնգամյակի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է մոտ 3 անգամ, իսկ ռացիոնալիզատորական առաջարկություններինը՝ 18 տոկոսով: Ժողովրդական տնտեսության մեջ ներդրված 47 հազար 562 գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումից տնտեսվել է 96,1 մլն ռուբլի (նախորդ հնգամյակից 75 տոկոսով ավելի):

Հանրապետությունում զգալիորեն բարելավվել է նաև գյուտարարական և արտոնագրա-լիցենզիոն աշխատանքների դրվածքը: Գիտահետազոտական ինստիտուտներում աճել է գյուտի մակարդակով մշակված թեմաների թիվը. երեք տարում ենթադրվող գյուտի համար ներկայացված է 1.165 հայտ, որից ստացված է 573 դրական որոշում, արմատավորված է 454-ը: Նշված փաստերը վկայում են, որ հանրապետության գյուտարարների և ռացիոնալիզատորների

ընկերության սկզբնական կազմակերպությունները զգալի աշխատանք են տարել հնգամյակի ռացիոնալիզատորական ֆոնդի համար վերցրած 130 մլն ռուբլու պարտավորությունն ապահովելու նպատակով:

Գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության IV (1973 թ. փետրվար) համագումարը որոշեց սոցիալիստական մրցություն ծավալել՝ «Հնգամյակը չորս տարում» նշանաբանով: Արձագանքելով համագումարի կոչին, հանրապետության 500-ից ավելի ստեղծագործական կոլեկտիվներ, մոտ 6.000 նորարարներ, բազմաթիվ արտադրամասեր ու ստեղծագործական կոմպլեքս բրիգադաներ ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ: Նրանք ճիշտ կողմնորոշվելով՝ իրենց ուշադրությունը կենտրոնացնում են այնպիսի հարցերի լուծման վրա, որոնք օգնում են ձեռնարկության պլանների կատարմանը և շահույթի ավելացմանը:

Գիտահետազոտական ու նախագծային կոնստրուկտորական կազմակերպությունների և արտադրության միացումը միասնական տնտեսական կոմպլեքսների մեջ հնարավորություն ընձեռեց զարգացնել գիտատեխնիկական բազան, որի շնորհիվ ժողովրդական տնտեսությունում այժմ արմատավորվում են արժեքավոր, արտադրական խոշոր նշանակություն ունեցող գյուտեր ու ռացիոնալիզատորական առաջարկություններ: Բարձրացավ մեկ առաջարկության արդյունավետությունը. այդ գումարը մեր հանրապետությունում հասավ գյուտի համար՝ 82 հազար, ռացիոնալիզատորական առաջարկությանը՝ 3.743 ռուբլու:

Արտադրության հետ սերտորեն կապված է աշխատում քարի և սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտը, որտեղ պլանային թեմաների մեծ մասը ավարտվում է գյուտի մակարդակով: 1973 թ. 58 գիտնականներ ներկայացրել են 60 հայտ. 22-ն արդեն ստացել են դրական որոշում, 7-ը արմատավորված է արտադրությունում, տնտեսվել է 2 մլն 300 հազար ռուբլի: Միայն Զ. Հացագործյանի չորս գյուտերը՝ դեկորատիվ և արհեստական քարերի պատրաստման ու մշակման նոր ձևերի մասին, տվել են 1 մլն ռուբլու տնտեսական օգուտ:

Մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի աշխատողների բեղմնավոր գործունեության շնորհիվ վերջին երեք տարում հեղինակային վկայագրերով պաշտպանվել են 143 մշակումներ, որոնց կիրառմամբ մեր հաշվիչ մեքենաները համաշխարհային ճանաչում են գտել:

Վատ չեն աշխատում արտադրության հետ կապված գյուտարարները: Շինարարության մինիստրության աշխատողներ Ս. Շահնազարյանի, Ռ. և Ա. Սահակյանների ստեղծագործական համատեղ աշխատանքի շնորհիվ միայն 1973 թ. բազմահարկ շենքերի հարկերի բարձրացման և ծածկերի փակման 6 գյուտերի օգտագործումը ժողովրդական տնտեսությանը միլիոնների օգուտ տվեց:

Լավագույններից է Լենինականի «Ստրոմմաշինա» գործարանի կոմպլեքս ստեղծագործական բրիգադայի (Ս. Հովհաննիսյանի գլխավորությամբ) առաջարկությունը: Անցյալում նախապատրաստվածքը աղացվում էր ֆրեզերային հաստոցների վրա. արտադրողականությունը ցածր էր, արտադրանքը՝ վատորակ: Բրիգադան մշակեց նոր կոնստրուկցիայի քարաղացման հաստոց, որը 4 անգամ բարձրացրեց արտադրողականությունը (աղացում ու մշակում է 10—40 մմ և ավելի հաստության երեսպատման սալիկներ): Յուրաքանչյուր հաստոցից ձեռնարկությունը տնտեսում է 186 հազար ռուբլի:

Գյուտարարության և ռացիոնալիզատորական աշխատանքների բարելավման հարցը միշտ եղել է կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում: ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը անցյալ տարի «Երկրում գյուտարարության գործի հետագա զարգացման, ժողովրդական տնտեսությունում հայտնագործումների, գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների օգտագործման բարելավման և նրանց դերի բարձրացումը գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում» որոշմամբ մեկ անգամ ևս նշեցին այդ աշխատանքների կարևորությունը: Միաժամանակ արձանագրվեց, որ մինիստրություններն ու գերատեսչությունները արտադրու-



թյան տեխնիկական մակարդակի և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման բնագավառում վատ են արմատավորում հայտնագործումներն ու գյուտերը. լայնորեն չի օգտագործվում գյուտերի հսկայական պոտենցիալը, մի հանգամանք, որը արգելակում է տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացմանը, տեղիք տալիս նյութական և ֆինանսական միջոցների չարդարացված ծախսերի: Օրինակ, աշխատատար պրոցեսների մեքենայացումը շատ դանդաղ է ընթանում մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունում (ձեռքի աշխատանքն այստեղ մոտ 55 տոկոս է): Վերջին երեք տարիներին մինիստրության սիստեմում ոչ մի գյուտ չի արմատավորվել, իսկ նրա հատուկ կոնստրուկտորական բյուրոն միայն մեկ գյուտի համար է դրական որոշում ստացել: Նույն վիճակն է նաև անտառային և փայտամշակման արդյունաբերության մինիստրությունում:

Գիտահետազոտական շատ ինստիտուտներ և ձեռնարկություններ քիչ են զբաղվում սկզբունքորեն նոր, բարձրարդյունավետ տեխնիկական պրոցեսների մշակումներով, մի շարք դեպքերում նոր արտադրատեսակների յուրացման և կատարելագործման ժամանակ չեն օգտագործվում առկա գյուտերը: Մի շարք մինիստրություններ և գերատեսչություններ գիտահետազոտական ինստիտուտների, նախագծա-կոնստրուկտորական, տեխնոլոգիական կազմակերպությունների գործունեության գնահատման ժամանակ հաշվի չեն առնում մշակումների նորույթը և արտոնագրային ապահովվածությունը, գյուտերի մասշտաբներն ու օգտագործման ժամկետները և տեխնիկատնտեսական արդյունավետությունը: Կոմպլեքսային էլեկտրասարքավորումների գիտահետազոտական ինստիտուտը, օրինակ, տարեկան պլանում նախատեսում է 60—70 թեմա (յուրաքանչյուր թեմա ունի կատարման 4—5 փուլ), որոնցից ավարտվում է 30—40-ը: Այսպես, վերջին երեք տարում ինստիտուտն ավարտել է մոտ 120 թեմա՝ իրենց ենթաթեմաներով, այնինչ ստացել է ընդամենը 25 գյուտի հեղինակային իրավունք:

Մինիստրություններն ու գերատեսչությունները հաճախ քիչ գյուտեր են նախատեսում գիտահետազոտական հաստատությունների աշխատանքների և ժողովրդական տնտեսության ոլորտում նոր տեխնիկայի արմատավորման պլաններում: Այսպես, օրինակ, 1972 թ. մեր հանրապետությունում պլանավորված 356 միջոցառումներից միայն 26-ն էր գյուտ, իսկ 1973 թ. 481-ից՝ 66-ը: Պետք է նկատի ունենալ, որ նախատեսված գյուտերի մեծ մասն ինքնին կրկնություն է:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը, որպես հիմնական հարց, կանխորոշեցին տեխնիկական առաջընթացի տեմպերը, ընդգծեցին սկզբունքորեն նոր մեքենաների, սարքավորումների և նյութերի ստեղծման, տեխնիկայի օբյեկտների ու արտադրության տեխնոլոգիայի մեջ գյուտերի և հայտնագործումների առավելագույն օգտագործման անհրաժեշտությունը: Այս առումով հսկայական դեր է խաղում արտոնագրային և գիտատեխնիկական ինֆորմացիայի օգտագործումը, որի համար անհրաժեշտ է բարելավել ճյուղային ու միջճյուղային ինֆորմացիան՝ նոր գյուտերի մասին:

Հանրապետությունում գործում է գիտատեխնիկական ու արտոնագրային ինֆորմացիայի ճյուղավորված ցանց, որը պետք է ապահովի ինֆորմացիոն նյութերի բարձր որակը, դրանք ժամանակին տրամադրի շահագրգռված կազմակերպություններին և հսկողություն սահմանի կիրառման վրա: Բայց, փաստորեն, այդ ասպարեզում դեռևս կան լուրջ թերություններ:

Երբեմն առանց ստուգելու ինֆորմացիայի արդյունավետությունն ու պարզելու օգտագործման բնագավառը, տարածվում են տեխնիկական աննշան արժեք ունեցող նորույթներ, իսկ կարևորները դուրս են մնում տեսադաշտից: Շատ հաճախ հրապարակվում են հնացած, արդեն արժեզուրկ նյութեր, որոնք, բնականաբար, պիտանի չեն: Հետևանքը լինում է այն, որ երբեմն գիտահետազոտական ինստիտուտները և կոնստրուկտորա-նախագծային կազմակերպություններն աշխատում են վաղուց հայտնի թեմաների վրա, իսկ արտադրությունը նոր մշակումներ չի ստանում:

Ճիշտ կազմակերպված ինֆորմացիայի դրական փորձ է կուտակել ՀՍՍՀ

թեթև արդյունաբերության մինիստրության հատուկ նախագծա-կոնստրուկտորական բյուրոն։ Արտոնագրային բաժինը եռամսյակը մեկ հրապարակում է ներդրվող գյուտերի անվանացանկը, որտեղ տրվում է գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման տնտեսական օգուտը, դրանց արդյունավետությունը, նպատակը, մեքենայացման աստիճանը, արտադրողականության բարձրացման չափը, ինքնարժեքի իջեցման հարցերը և այլն։ Անվանացանկերը կազմվում են արդյունաբերության առանձին ճյուղերի համար և տրամադրվում համապատասխան ձեռնարկություններին։ Միայն 1973 թ. բաժինը կազմել է 1.048 անոտացիոն ինֆորմացիա։ Գյուտերի ընտրությանն ու ներդրմանն օգնում են նաև տեղերում բաժնի կազմակերպած արտոնագրային գրականության ցուցահանդեսները. նորարարները ծանոթանում են գյուտերին և ընտրում այնպիսիները, որոնք հնարավոր է արմատավորել արտադրությունում։ Բաժինը ստանում է թեմաներ, կատարում թեմատիկ ընտրություններ, տալիս գյուտերի բացատրությունները, ծրագրերը, տեխնիկատնտեսական հիմնավորումը և դրանք ուղարկում հասցեատիրոջը։ Ինֆորմացիոն աշխատանքի շնորհիվ հանրապետությունում 1972 թ. արմատավորված 166 գյուտերից 67-ը և 1973 թ. 176-ից 67-ը պատկանում են թեթև արդյունաբերության մինիստրությանը։

Դժբախտաբար, դեռևս կան ձեռնարկություններ ու կազմակերպություններ, որոնց ինֆորմացիոն ծառայությունների գործունեությունը գնահատվում է ոչ թե պատրաստված նյութերի որակով և օգտագործման արդյունավետությամբ, այլ միայն քանակով ու ծավալով։ Օրինակ, էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի բաժանմունքի ինֆորմացիոն արտոնագրային բաժինը բաղկացած է 22, իսկ թեթև և տեքստիլ մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի բաժանմունքինը՝ 4 հոգուց։ Անհրաժեշտ է նշել, որ այս ինստիտուտներից ստացվող օգուտը չնչին է, որովհետև այդ բնագավառի գործարանները վերջին երեք տարում ոչ մի գյուտ չեն արմատավորել։

Կուսակցության ու կառավարության որոշումն այժմ մեծ հնարավորություններ է ստեղծում խոշոր, բարձրարդյունավետ գյուտերի արագ ներդրման համար։ Մինիստրությունները, գերատեսչություններն ու ձեռնարկությունները պետք է կոնկրետ աշխատանք տանեն գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ստեղծման ու օգտագործման պրոցեսների համատեղման նպատակով։ Այստեղ, իհարկե, մեծ նշանակություն ունեն նաև հասարակական վերահսկողության սահմանումը, պայքարը առաջարկությունների արմատավորման գործում եղած քաշքշուկի ու բյուրոկրատիզմի դեմ. արժեքավոր որոշ առաջարկություններ երբեմն տարիներով մնում են մշակման պրոցեսում։ Օրինակ, Գ. Եղիազարյանի գյուտը։ Թեև նրա ստեղծած էլեկտրամեքենաների թերթերի փաթեթավորման արտադրության անընդհատ գործող ավտոմատ գիծը փորձարկելիս դրական արդյունք է տվել, սակայն մինչև օրս չի կիրառվում։ Նման վերաբերմունքի պատճառով մեր հանրապետությունում ամեն տարի 3.000-ից ավելի ռացիոնալիզատորական առաջարկություններ չեն արմատավորվում արտադրությունում։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի համատեղ որոշումը գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության կենտրոնական խորհրդին ու նրա տեղական կազմակերպություններին պարտավորեցնում է ուժեղացնել հասարակական հսկողությունը գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման ասպարեզում։ Միաժամանակ խնդիր է դրվում կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության, տրանսպորտի, ինչպես նաև գիտության աշխատողների առջև՝ ապահովել որոշման մեջ նախատեսված միջոցառումների կատարումը։ Այդ գործում պետք է լայնորեն ներգրավել բանվորներին, ինժեներա-տեխնիկական անձնակազմին և փորձականներին, դրանով իսկ հնարավորություն ընձեռել ապահովելու արդյունաբերության արտադրանքի տեխնիկական մակարդակի հետագա աճը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, հանրային արտադրության արդյունավետությունը։

# ՏԵՂԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Վ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Արդի փուլում ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության կառավարման կատարելագործումը կուսակցության և կառավարության գործունեության կարևորագույն բնագավառներից է։ Այդ առթիվ ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց. «Կառավարման սիստեմի կատարելագործումը ոչ թե միանվագ միջոցառում է, այլ կյանքի կողմից առաջ քաշված պրոբլեմների լուծման դինամիկ պրոցես։ Այդ պրոբլեմներն այսուհետև պետք է գտնվեն մեր ուշադրության կենտրոնում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 87—88)։

Արդյունաբերության կառավարման կատարելագործումը ներկայումս ընթանում է արտադրության կենտրոնացման և համակենտրոնացման, կառավարման պարզեցման ու էժանացման, կադրերի ընտրության, նրանց տեղաբաշխման ու դաստիարակման, հանձնարարված գործի հանդեպ պատասխանատվության բարձրացման ուղիներով. ստեղծվում են արտադրական և արդյունաբերական միավորումներ։ Սովետական Միությունում արդեն կան հազարավոր խոշորացված ձեռնարկություններ և արտադրական միավորումներ, որոնց միջոցով հնարավոր է դառնում ճիշտ զուգակցել տերիտորիալ և ճյուղային կառավարման սկզբունքները, ավելի ուշադիր ուսումնասիրել և օգտագործել տեղական հումքի պաշարներն ու հնարավորությունները, մարդկային ռեսուրսները, բարձրացնել ձեռնարկությունների առջև ծառացած տեխնիկական քաղաքականության խնդիրների լուծման գիտական մակարդակը։

Այս կարևոր պրոբլեմներն այժմ իրագործվում են Հայկական ՍՍՀ տեղական արդյունաբերության կառավարման կազմակերպման բազմաճյուղ սիստեմում, որի ձեռնարկությունները տարածված են հանրապետության վարչական տարբեր շրջաններում։

Տեղական արդյունաբերության հիմնական նպատակն է մասնագիտացված ձեռնարկությունների հումքի մնացորդների, արդյունաբերական նշանակություն չունեցող և ոչ հանքային նյութերի օգտագործմամբ արտադրել ժողովրդական սպառման համար անհրաժեշտ տնտեսական և կուլտուր-կենցաղային ապրանքներ։ Այդ նպատակով 1965 թ. հոկտեմբերին Հայաստանում կազմակերպվեց ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրություն, որի սիստեմում ընդգրկված էին տեղական նշանակության 13 ձեռնարկություն և 5 արտադրամաս. թողարկած արտադրանքի ծավալը կազմեց ընդամենը 12,6 մլն ռուբլի։ Արտադրական նոր ձեռնարկությունների կազմակերպման և հների ընդլայնման շնորհիվ 1972 թ. համախառն արտադրանքի ծավալը, 1965 թ. համեմատությամբ, ավելացավ 6 անգամ, իսկ աշխատողների թիվը 2.745 մարդուց հասավ 9.800-ի։

Հանրապետության 23 շրջաններում ու քաղաքատիպ ավաններում, Երևանում, Լենինականում, Կիրովականում և Էջմիածնում 1972 թ. արդեն գործում

էին արդյունաբերական 45 ձեռնարկություններ, որոնք թողարկում էին ավելի քան 350 արտադրատեսակ։

ՀՍՍՀ տեղական արդյունաբերությունը 1972 թ. իրացման պլանը կատարեց 100,3, համախառն արտադրանքինը՝ 100,4 տոկոսով։ Սակայն 8 ձեռնարկություններ թերակատարեցին իրացման, 7-ը՝ համախառն արտադրանքի պլանները։ Եթե մինիստրության մասշտաբով իջել է հումքի ինքնարժեքը, ապա սարքաշինական, կարի և սև մետալուրգիայի ճյուղերում արտադրանքի ինքնարժեքը դեռևս բարձր է պլանայինից։ Արտադրության կառավարման նման պայմաններում անբավարար են ներդրվում նոր տեխնիկան և տեխնոլոգիան։ Թեև նոր տեխնիկայի արմատավորման պլանը կատարվել է 104,4 տոկոսով, բայց արտադրապրոցեսները տարվա ընթացքում մասնագիտացվեցին միայն տարաների (շինարարական տարրերի կոմբինատ) և սովարաթղթե արկղերի (հուշանվերների փորձնական գործարան) պատրաստման բնագավառում։ Զրգձրգումներով է իրագործվում նաև գեղարվեստական-տեխնիկական խորհրդի հաստատած նոր արտադրատեսակների ներդրումը։ Հանրապետական պետտեսչության ստուգումներից պարզվել է, որ հանձնարարված 203 նմուշներից արտադրության մեջ ներդրվել է ընդամենը 112-ը։

Տեղական արդյունաբերության մինիստրության սպառման առարկաների արտադրության ծավալում թեթև արդյունաբերության ապրանքները կազմում են համախառն արտադրանքի 40, մեքենաշինությունն ու մետաղամշակությունը՝ 27, քիմիականը՝ 19, մյուսները միասին՝ 14 տոկոսը։

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1973 թ. մարտի 2-ի որոշումից, ՀՍՍՀ տեղական արդյունաբերության սիստեմում արտադրամիավորումներ ստեղծելը պետք է զգալիորեն նպաստի արտադրության կառավարման ճիշտ կազմակերպմանը, մասնագիտացմանը և կոոպերացմանը՝ արդի գիտատեխնիկական առաջընթացի ձեռք բերած մակարդակին հասնելու համար։ Փոխվում են արտադրության կառուցվածքն ու տեխնիկական հագեցվածության ծավալը, գլխամասային ձեռնարկությունը ստանում է իրավաբանական անձի իրավունք։ Այն կենտրոնացված կարգով ապահովում է միավորման ձեռնարկությունների արտադրաֆոնդերն ու ռեզերվները, ընթացիկ և հեռանկարային պլանավորումը, արտադրապրոցեսում՝ տնտհաշվարկը։ Օգուտների մասնահանումներից կուտակվում են արտադրության ընդլայնված վերարտադրության և նյութական խրախուսման ֆոնդերը, հաշվի են առնվում գիտության, տեխնիկայի և ժողովրդական տնտեսության պահանջները։

Արտադրամիավորումները կրճատում են արտադրական ձեռնարկությունների թիվը։ Փոխվում են արտադրամասերի և տեղամասերի կազմակերպման ու ղեկավարման առկա նորմատիվները։

Ձեռնարկությունների միավորման ժամանակ անհրաժեշտ է մասնագիտացում կատարել արտադրատեսակներին համապատասխան. պետք է հաշվի առնել տեխնոլոգիական ցիկլը, նոր ձեռնարկությունների կադրերի տեխնիկական մակարդակը, թողարկվող արտադրանքի որակն ու ծավալը, ավտոմատացման և մեքենայացման աստիճանը, ինչպես նաև, պահեստավորման պայմաններից ելնելով, ընտրել գլխամասային ձեռնարկությունը։ Բավական է նշել, որ տեղական արդյունաբերության արտադրական 9 ձեռնարկություններ թողարկում են մետաղյա ցանց՝ 1.513 հազար ռուբլու ընդհանուր ծավալով, այն դեպքում, երբ միայն Երևանի մետշինի գործարանի նույնանուն արտադրատեսակը ճիշտ այնքան է, որքան մյուս 8-ինը միասին վերցրած։

Չի մասնագիտացված նաև նվերների արտադրությունը։ Թողարկումը կազմակերպվում է արտադրական 7 ձեռնարկություններում. 90 տոկոսը (գումարային արտահայտությամբ) արտադրում է Երևանի նվերների փորձնական գործարանը։ Այսպիսի վիճակը պահանջում է միանման արտադրատեսակները կենտրոնացնել առանձին ձեռնարկություններում, լավագույն ձևով ապահովել նյութատեխնիկական մատակարարումը և որակյալ մասնագիտական կադրերի պատրաստման միջոցով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Նոր ապարատ ստեղծելիս անհրաժեշտ է բարձրացնել կառավարման օպերատիվությունը, կրճատել վարչական ծախսերը— հիմնել լիարժեք գործող արտադրամիավորումներ։ Ներկայումս գոյություն ունի ձեռնարկությունների միավորման 3 հիմնական եղանակ՝ միավորվում են միևնույն հումքից ստացվող, բայց տարբեր արտադրանք թողարկող, միատեսակ արտադրանք թողարկող, միմյանց հետ փոխադարձաբար կապված արտադրական ձեռնարկությունները։ Եթե Սովետական Միությունում ավելի շատ տարածված են երկրորդ և երրորդ բնույթի արտադրամիավորումները, ապա տեղական արդյունաբերության սիստեմում հարմար է կիրառել առաջինն ու երկրորդը։

Արտադրամիավորումների կազմակերպումը անհրաժեշտ է անցկացնել երեք փուլերով՝ միավորել մինիստրության արտադրական օղակները, հանրապետության բոլոր գերատեսչությունների համատեսակ արտադրանք թողարկող ձեռնարկությունները, վերակառուցել մինիստրության կենտրոնական ապարատը։

Մեր կարծիքով, խելամիտ է ձեռնարկությունները միացնել կոմբինատների և արտադրական միավորումների սիստեմով։ Նպատակահարմար է, օրինակ, միավորել Սիսիանի և Եղեգնաձորի արտադրական կոմբինատները, ինչպես նաև Կալինինոյի արտադրական մասնաճյուղն ու էջմիածնի շինանյութերի կոմբինատը և այլն։ Տեխնոլոգիական բնույթից ելնելով, արտադրական 12 ձեռնարկությունների միավորումից շահավետ է կազմակերպել մետշինի, կենցաղային մետաղական առարկաների, մետաղյա ամանեղենի, ճենապակու-հախճապակու և գեղարվեստական արտադրական կոմբինատներ։ Նույն ճանապարհով կարելի է ստեղծել կարի-գալանտերեայի, տեքստիլ, «պլաստիկ», «Հայէլեկտրակենցաղսարք», «Հայկական հուշանվերներ» և տեխնիկա-արտադրական այլ միավորումներ։

Երկրորդ փուլում, տեղական արդյունաբերության միավորումների բազայի վրա, պետք է միավորել հանրապետության տարբեր գերատեսչությունների ժողովրդական սպառման առարկաների արտադրության համանուն ձեռնարկությունները։ Մինչև այժմ կազմակերպվել է այս կամ այն ճյուղի զարգացմանը նպաստող նյութերի և առարկաների արտադրություն, որը միաժամանակ խթանել է հանրապետության տեղական արդյունաբերության զարգացումը, բավարարել ազգաբնակչության ամենօրյա հարաճուն պահանջները։ Հենց միայն կենցաղսպասարկման մինիստրության ձեռնարկությունները թողարկել են ժողովրդական սպառման և կուլտուր-կենցաղային բազմապիսի առարկաներ (մահճակալներ, թիթեղյա վառարաններ, կահույք, մետաղյա ցանցեր և այլն), որոնց ընդհանուր ծավալը կազմել է 45 մլն ռուբլի։ Կասկած չկա, որ տեղական արդյունաբերության և այդ սիստեմի համասեռ արտադրությունների միավորումը զգալիորեն կբարելավի կառավարման գործը և կնպաստի ձեռնարկությունների հետագա կոոպերացմանն ու մասնագիտացմանը։ Լայն հնարավորություններ կստեղծվեն նոր արտադրատեսակների յուրացմամբ և աշխատանքի արտադրողականության ինտենսիվ բարձրացմամբ կրճատելու վնասաբեր՝ մանր, աշխատատար ճյուղերը, մշակելու տեխնոլոգիական ավտոմատացված ցիկլեր, բարոյապես մաշված սարքավորումների փոխարեն ներդնելու տեխնոլոգիական ժամանակակից սարքեր։

Կառավարման վերակառուցման երրորդ փուլում անհրաժեշտ է կոորդինացնել և մասնագիտացնել մինիստրության կենտրոնական ապարատը, մշակել առանձին բաժինների կանոնադրությունները և ըստ տեխնիկա-տնտեսական պահանջների՝ ճշտել դրանց ֆունկցիաները։

Ձեռնարկությունների միավորման և վերակառուցման ընթացքում մինիստրությանը կենթարկվեն Լենինականի հեծանիվների գործարանը, Երևանի գլխարկների ֆաբրիկան, Գորիսի արտադրական կոմբինատը, ավտոտրանսպորտի ձեռնարկությունը և վերանորոգման գրասենյակը։ Չպետք է անտեսել, որ տեղական արդյունաբերության սիստեմի շինանյութերի, կոշկեղենի, կահույքի ձեռնարկությունները, որոնց կոոպերացման համար չկան անհրաժեշտ հեռանկարներ, հարկ կլինի հանձնել համապատասխան գերատեսչություննե-

*րին։ Կզարգանա կուլտկենցաղային առարկաների և սպասքեղենի արտադրությունը, կկիրառվեն տեղական հումքի խոշոր պաշարները՝ պեռլիտները, դիատոմիտը, կիսաթանկարժեք քարերը և մյուս ձեռնարկությունների օգտագործված նյութերի մնացորդները։ Նախատեսվում է հնգամյակի վերջում թողարկել կենցաղային քիմիայի (ավելի քան 70 հազար ռուբլու), պլաստմասսային (16 տոննա), ճենապակյա-հախճապակյա (3 մլն ռուբլու) առարկաներ, մեծ քանակությամբ ոսկերչական զարդեր, գորգեր, բամբակյա գործվածքներ և այլն։*

*Ներկայումս, երբ կատարելագործվում է արդյունաբերության կառավարման սիստեմը, առավել հրատապ է դառնում խոշորացված ձեռնարկությունների ինքնուրույնության հարցը, դրանց իրավունքների ընդլայնման, պլանավորման և հաշվառման կենտրոնացման անհրաժեշտությունը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի և Մինիստրների սովետի որոշման մեջ նշվում է, որ անհրաժեշտ է «...բարձրացնել ճյուղի հիմնական արտադրատեսակների արտադրության համակենտրոնացման մակարդակը, զարգացնել գիտատեխնիկական բազան, մասնագիտացնել ու կոոպերացնել միավորվող ձեռնարկությունները՝ միասնական տնտեսական կոմպլեքսների մեջ արտադրությունը, գիտահետազոտական և նախագծային կոնստրուկտորական կազմակերպությունները օրգանապես միացնելու հիման վրա՝ նպատակ ունենալով ապահովել աշխատանքի արտադրողականության նշանակալի աճը, բարձրացնել արտադրանքի որակը, իջեցնել դրա ինքնարժեքը և բարելավել մյուս տեխնիկա-տնտեսական ցուցանիշները»։*

*Արդյունաբերության կառավարման կազմակերպման վերակառուցումը ստեղծագործական խոշոր ավանդ է տեխնիկական առաջընթացի, արդյունաբերության կառավարման դեմոկրատական սկզբունքների հետագա զարգացման ասպարեզում։ Կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունները պետք է ձեռնարկեն ամեն ինչ՝ կառավարման կազմակերպման կատարելագործման աշխատանքն անթերի իրագործելու համար։*

---

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



*

## ՌՈՒՍԱԿԱՆ ՊՈԵԶԻԱՅԻ ՀԱՆՃԱՐԸ

*

(Ա. Ս. ՊՈՒՇԿԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 175-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Գրել Պուշկինի մասին, նշանակում է գրել ողջ ռուս գրականության մասին,— նշել է Վիսարիոն Գրիգորևիչ Բելինսկին։ Եվ իրոք, ռուսական կուլտուրայի և հասարակական մտքի պատմության մեջ Պուշկինի գործունեությունը նշանավորում է մի ամբողջ դարաշրջան, նրա ստեղծագործությունը բացառիկ դեր է խաղացել ռուս գրականության զարգացման մարզում։

Ա. Ս. Պուշկինը ծնվել է 1799 թվականի մայիսի 26-ին (նոր տոմարով հունիսի 6-ին) Մոսկվայում, ոչ հարուստ, բայց ազնվատոհմ ընտանիքում։ Ապագա պոետի պատանեկությունը համընկել է 1812 թ. հայրենական պատերազմի հետ կապված ազգային ինքնագիտակցության արտակարգ վերելքի ժամանակաշրջանին։ Նապոլեոնի դեմ մղված հաղթական պատերազմը ռուս ժողովրդի վիթխարի կարողությունների առկայության վկայությունն էր, որը նպաստեց նրա ազատաբաղձ ոգորումների բորբոքմանը։ «Այդ ժամանակ իսկ,— գրել է դեկաբրիստ Ալեքսանդր Բեստուժևը,— ռուս ժողովուրդն առաջին անգամ զգաց իր ուժը. այդ ժամանակ իսկ բոլոր սրտերում արթնացավ անկախության զգացմունքը— նախ՝ քաղաքական, ապա նաև՝ ժողովրդական»։

Անմոռա՜ց ժամանակ... 1812 թվականի մասին հետագայում կգրի Պուշկինը։ Ժամանակ, երբ ապագա պոետի հոգում, Գերցենի արտահայտությամբ «...հնչում էին հանդիսավոր հաղթական կանչեր»։

Գրական գործունեության առաջին իսկ քայլերից Պուշկինը հանդես է

եկել իբրև քաղաքական սուր նկրտումների բանաստեղծ: «Պուշկինն առաջինն զգաց, որ գրականությունն առաջնակարգ կարևորություն ունեցող ազգային գործ է,— գրել է Ա. Մ. Գորկին,— որ այն վեր է գրասենյակային աշխատանքից և պալատական ծառայությունից. նա առաջինը գրականության նշանակությունը հասցրեց մինչ այդ անհասանելի բարձրության. նրա համար բանաստեղծը ժողովրդի բոլոր զգացմունքների ու խոհերի արտահայտիչն է, նա կոչված է հասկանալու և արտահայտելու կյանքի բոլոր երևույթները»:

Պոետի գրական առաջին որոնումները, որ սկսվել էին դեռևս Ցարսկոյե Սելոյի լիցեյում ուսանելիս, պսակվեցին **Ռուսլան և Լյուդմիլա** էպիկական պոեմի ստեղծմամբ: «Ոչ մի պոեմ,— գրել է բանաստեղծի առաջին կենսագիր Պ. Վ. Աննենկովը,— Պուշկինից այնքան ջանք չի խլել, որքան այս փոքրիկ «կեսկատակ, կես-լուրջ» ֆանտաստիկ հեքիաթը»: **Ռուսլան և Լյուդմիլայում** նա փորձել է նրբակիրթ պոեզիային հակադրել ժողովրդական զրույցների ու հեքիաթների պարզությունը: Պատանեկան այս պոեմը համակված է բուռն կենսասիրությամբ: Պոեմի հաջողությունն անկեղծ հրճվանք պատճառեց բանաստեղծ Վ. Ա. Ժուկովսկուն. Պուշկինին նա նվիրեց իր նկարը՝ հետևյալ խորիմաստ մակագրությամբ. «Հաղթած աշակերտին՝ պարտված ուսուցչից հանդիսավորագույն այն օրը, երբ նա ավարտեց իր **Ռուսլան և Լյուդմիլա** պոեմը— 1820 թ. մարտի 26, մեծ ուրբաթ»:

Պուշկինի վաղ շրջանի ստեղծագործություններից լայն ճանաչում գտան քաղաքական երեք բանաստեղծություն— **Գյուղը, Ազատություն** ներբողը, **Չաադաևին** ձոնը: Անցել են մանուկ բերկրանքի օրերը, և բռնակալական տագնապալի իրականության մեջ ազատատենչ, պատվարժան երիտասարդությանը պոետը կոչ է անում հայրենիքին նվիրել իր ամենաազնիվ հույզերը: **Չաադաևին** բանաստեղծությունը պոետն ավարտում է լավատեսական այս խոսքերով.

**Ընկե՛ր, հավատա՛, կծագի՛ նա դեռ,**
**Թովիչ արշալույսը երջանկության,**
**Ռուսիան իր քնից կբարձրանա վեր,**
**Եվ բեկորներին ինքնակալության**
**Կգրեն անջինջ անունները մեր:**

Այդ տարիներին տարածվում էին հեղափոխական գաղափարները, ստեղծվում ապագա դեկաբրիստների գաղտնի կազմակերպությունները: **Ազատություն** ներբողում Պուշկին-հրապարակախոսն առաջին անգամ մերկացրեց Ալեքսանդր I-ի քաղաքականությունը: Անսքող զայրույթով ու ատելությամբ նա դիմում է բռնակալ արքային.

**Ատում եմ քեզ և քո գահը,**
**Մեահեծան գոռոզ ցար**
**Եվ քո որդոց և քո մահը**
**Պիտի տեսնեմ անպատճառ:**

Ահա այս ներբողը և քաղաքական էպիգրամներն էին հիմնական պատճառը, որ 1820 թ. բանաստեղծն արտաքսվեց Պետերբուրգից: Նրան սպասում էր Սիբիրը, բայց բարեկամների ջանքերով աքսորվում է հարավ: Սեպտեմբերին Պուշկինն արդեն իր աքսորավայր Քիշնևում է, որը դեկաբրիստական շարժման խոշորագույն կենտրոններից էր: Հարավում նա ծանոթանում է հեղափոխական միության հարավային խմբի ղեկավար Պեստելի՝ իրեն երբևիցե հանդիպած ամենախելացի մարդկանցից մեկի հետ: Պուշկինը մասնակցել է դեկաբրիստների՝ Կամենկայում (Ուկրաինա) կայացած խորհրդակցություններից մեկին: Այդ ժամանակվա նրա քաղաքական տրամադրությունների պերճախոս արտահայտությունն է 1821 թ. Քիշնևում գրած **Դաշույն** բանաստեղծությունը, որը դեկաբրիստական պրոպագանդայի ամենավառ նմուշներից է:

**Ազատության թաքո՛ւն պաշտպան, դաշո՜ւյն, պատժո՛ղ մեծ,**
**Վերջին դու դատավոր անպատվության ու զրկանքի:**

Գրում էր բանաստեղծը՝ համոզված, որ, ինչպես անցյալի բոլոր բռնա-



կալներին, օրինազանց արքային ևս հասնելու է պատժող դաշույնը: Այսպիսով, ցարական կառավարությունը, որ Պուշկինին աքսորելով հարավ, հույս ուներ «ուղղել» նրան, չհասավ իր նպատակին: Պոետն ընկավ հեղափոխական շարժման խառնարանը:

Ծուռով բանաստեղծին հաջողվում է փոխել աքսորավայրը, տեղափոխվել Օդեսա: Բայց այստեղ ևս դժվար էր նրա համար: Եղբորը նա գրում է. «Հոգյա՛կս, զայրույթից սիրտս խառնում է. ինչի որ նայում եմ, ամեն ինչ այնպե՞ս նողկալի է, այնպե՞ս անարգ, այնպե՞ս հիմար, արդյոք երկա՞ր կտևի այս»:

Հարավում են ստեղծվում Պուշկինի **Կովկասյան գերին, Ավազակ եղբայրները, Բախչիսարայի շատրվանը, Գնչուներ** պոեմները: Ժամանակակիցներն ուժգին զգացին **Կովկասյան գերի** պոեմի հասարակական հրատապությունը, պոեմ, ուր Պուշկինը կարողացել էր վեր հանել իր ժամանակի երիտասարդության ամենաակնբախ ախտը— «անտարբերությունը կյանքի և նրա վայելքների նկատմամբ, հոգու այդ վաղաժամ ծերությունը»:

**Գնչուները** փիլիսոփայական պոեմ է՝ նվիրված կատարյալ ազատության խնդրին, անհատի ու հասարակության հարաբերություններին: «Հեղձուցիչ քաղաքների» դատարկ ու սին կյանքն այստեղ հակադրվում է գնչուական կյանքի ազատությանը:

1824 թ. մայիսի 24-ին Պուշկինին հաղորդվեց Ալեքսանդր I-ի «բարձրագույն կամքը». նոր աքսորավայրը ծնողների կալվածքն էր, ուր պետք է ապրեր նա՝ տեղական իշխանությունների հսկողությամբ: Անժամկետ էր այդ աքսորը՝ Պսկովի նահանգի Միխայլովսկոյե խուլ գյուղը: Միայնակ, տխուր կյանքի միակ սփոփանքը բարեկամների նամակներն էին, որ սատարում էին բանաստեղծին՝ հիշեցնելով նրա տաղանդի բացառիկությունը: «Դու ոչ թե տաղանդավոր ես, այլ՝ հանճարեղ,— գրում է նրան Ժուկովսկին,— դու հարուստ ես, ունես հանիրավի դժբախտությունից **վեր լինելու** միջոցը... Դու կասես, թե ես խաղաղ ափից քարոզ եմ կարդում խեղդվողին: Ո՛չ: Դատարկ ափին կանգնած՝ ալիքների մեջ ես տեսնում եմ հսկային և գիտեմ՝ նա չի խեղդվի...»:

«Քեզ են ուղղված Ռուսաստանի աչքերը. սիրում են քեզ, հավատում, ընդօրինակում են քեզ»,— գրում էր Պուշկինին Ռիլեևը 1825 թ., ապստամբության նախօրեին. հյուսիսային միության առաջնորդի նամակները բանաստեղծի բարոյական հենարանն էին:

Միխայլովսկոյեում էր Պուշկինը 1825 թվականի դեկտեմբերի 14-ի իրադարձությունների ժամանակ, որոնք պատմական շրջադարձային դեր խաղացին Ռուսաստանի հետագա ճակատագրի համար: Խռովարարների գործի քննության ընթացքում բազմիցս ծառացել է այն հարցը, թե եղե՞լ է արդյոք պոետը գաղտնի կազմակերպության անդամ. շատ դեկաբրիստների մոտ հայտաբերվել են նրա բանաստեղծությունները: Դեկաբրիստ Ի. Յակուշկինի վկայությամբ Պուշկինի ազատասիրական բանաստեղծությունների ձեռագրերը «... ո՛չ միայն հայտնի էին բոլորին, այլև այդ ժամանակ բանակում չկար քիչ թե շատ գրագետ մի բարձրաստիճան սպա, որ անգիր չիմանար դրանք»: Ինքը՝ պոետը, չէր թաքցնում իր և դեկաբրիստների մտերմությունը, հայտարարելով՝ «Կապ եմ ունեցել համարյա բոլորի հետ, դատապարտվածներից շատերի հետ նամակագրություն եմ ունեցել: Խռովության կոչող բոլոր ձեռագրերը իմ անունն էին կրում»:

Սակայն հետաքննող հանձնաժողովին չհաջողվեց ձեռք բերել Պուշկինի և դեկաբրիստական կազմակերպությունների ուղղակի կապը, գաղտնի միությունների ստեղծման գործում նրա մեղսակցությունը հաստատող փաստեր: Մնում էր դիմել ամեն միջոցի՝ պարտադրելու նրան ծառայել միապետության շահերին:

1826 թվականի սեպտեմբերի չորսին Պուշկինն անակնկալ կանչվում է պալատ: Նիկոլայ I-ը որոշել էր «ներել» շնորհազրկված պոետին՝ իշխանության մասին ոչինչ չգրելու պայմանով: Իսկ որոշ ժամանակ անց գաղտնի գործակալության պետ Բենկենդորֆը երեսպաշտորեն գրում է պոետին. «Նորին

մեծությունը լիովին համոզված է, որ ձեր գերազանց ընդունակությունները դուք կգործադրեք մեր հայրենիքի փառքը գալիք սերունդներին հաղորդելու համար... Ոչ-ոք չի վերանայի ձեր ստեղծագործությունները: Դրանք չեն ենթարկվի ոչ մի գրաքննության. ինքը՝ թագավոր-կայսրը, կլինի ձեր ստեղծագործությունների առաջին գնահատողն ու գրաքննիչը»:

Ինչպես նշել է Գերցենը, իր ողորմածությամբ կայսրը կամենում էր կործանել Պուշկինին հասարակական կարծիքի առաջ, իսկ առերևույթ բարեհաճությամբ՝ հպատակեցնել նրան:

Շուտով Պուշկինին վիճակվեց իմանալ կայսերական ողորմածության իրական արժեքը, զգալ ոստիկանական ամենատես աչքի վերահսկողության ծանրությունը: Պոետի դեմ սկսվեց քաղաքական նոր հալածանք՝ **Անդրե Շենյե** բանաստեղծության և **Գավրիիլիադա** պոեմի առնչությամբ: Ցարական ոստիկանության կողմից **Անդրե Շենյեն** դիտվեց իբրև դեկաբրիստական կոչ: Խիստ սահմանափակվեց պոետի ազատությունը, սահմանվեց ոստիկանության գաղտնի հսկողություն: Ցարական ինքնակալությունն առիթ էր փնտրում՝ դատաստան տեսնելու դարաշրջանի առաջադիմական գաղափարների դրոշակակրի հետ: Բայց ինքնակալության դեմ մղվող պայքարում նա չէր պատրաստվում ցած դնել զենքը, մշտապես հիշելով Ռիլեևի՝ իրեն ուղղված «Եղիր Պոետ և Քաղաքացի» խոսքերը: Դեկաբրիստների պարտությունից հետո գրած **Արիոն** բանաստեղծության մեջ Պուշկինը հպարտորեն հայտարարում է. «Նախկին հիմներն եմ ես երգում»:

Թե ինչպիսին էր հանճարեղ պոետի դերը ժողովրդի ազգային ինքնագիտակցության ձևավորման գործում, վկայում են Ալեքսանդր Գերցենի հետևյալ տողերը. «Ճորտության ու տառապանքի հովիտներում լսվում էր միայն Պուշկինի զնգուն, բարձրահունչ երգը. այդ երգը շարունակում էր անցյալ դարաշրջանը, իր առնական ձայնով լրացնում ներկան և հղում իր ձայնը դեպի հեռավոր ապագան»:

1827 թ. հունվարին Ա. Գ. Մուրավյովայի հետ Պուշկինը Սիբիր ուղարկեց դեկաբրիստներին նվիրված իր բանաստեղծությունը.

**Հպարտ ապրեցեք, ո՞վ աքսորյալնե՛ր,**
**Խավար հանքերում հեռու Սիբիրի,**
**Չի կորչի իզուր աշխատանքը ձեր**
**Եվ ձգտումները ձեր վեհ մտքերի:**

Պոետը կոչում է ընկերներին տոկունության, քաջության, դիմադրության, նա խորապես հավատում է.

**Եվ կընկնեն մի օր շղթաները ձեր,**
**Բանտը կդառնա խղճուկ ավերակ,**
**Ազատությունը դեմ կվազի ձեզ,**
**Ու ընկերներից սրեր կստանաք:**

Ա. Ի. Օդոևսկու պատասխանը ցույց է տալիս, թե ինչպիսի տպավորություն է թողել այդ բանաստեղծությունը աքսորյալ դեկաբրիստների վրա: Դրանից քաղված «Կայծից բոց կբռնկի» խոսքը դարձավ լենինյան «Իսկրա» լրագրի բնաբանը, դաստիարակեց հեղափոխականների շատ սերունդներ: Պոետը փորձում է դուրս գալ ինքնակալության գաղջ մթնոլորտից, բայց ապարդյուն: Մեծ դժվարությամբ նրան հաջողվում է Կովկաս մեկնելու թույլտվություն ստանալ, ուր մղեգնում էր ռուս-թուրքական պատերազմը: Պուշկինը կամենում էր Կովկաս մեկնել՝ հանդիպելու աքսորված դեկաբրիստ ընկերներին: Էրզրում տանող ճանապարհն անցնում էր Հայաստանով: Գործող բանակ գնալիս, ճանապարհին, Գյադգյառ ամրոցից ոչ հեռու, Բզովդալի լեռնանցքում պոետը հանդիպեց մի սայլի. Թեհրանից Թիֆլիս էին տեղափոխում սպանված Ա. Գրիբոյեդովի դին: Էրզրումի ճանապարհին Պուշկինը կանգ առավ Գյումրիում, Ղարսում նա ջերմորեն հյուրընկալվեց հայկական միջավայրում: Գործող բանակ հասավ հունիսի 1-ին (հին տոմարով): Պոետի ժամանումը կարևոր իրադարձություն էր դեկաբրիստների համար, իսկ նրա



ամեն մի խումբը հույսով էր համակում նրանց սրտերը պայծառ գալիքի նկատմամբ:

Վերնախավային իշխող շրջաններում ակնկալում էին, որ պոետը կփառաբանի Պասկևիչի արշավանքը. բայց, չնայած դաժան գրաքննությանը, նրան հաջողվեց **Ճանապարհորդություն դեպի Էրզրում** նոթերում քննադատել ցարական իշխանության ռազմական ու վարչական գործունեությունը: Պուշկինը Կովկասը թողեց ռուս մարդու անկեղծ հրճվանքով, որ ծնվել էր նրա հոգում ժողովուրդների եղբայրության գաղափարի վեհությունից, կովկասցու հոգեկան գեղեցկությունից:

Դեկաբրիստների պարտությունը Ռուսաստանի պրոգրեսիվ գործիչների առջև մեծ սրությամբ բարձրացրեց հայրենիքի պատմական ճակատագրի հարցը՝ անցյալում և նրա ապագայի հեռանկարները: Պատմականությունը դառնում է Պուշկինի ռեալիստական ստեղծագործության հիմնական առանձնահատկություններից մեկը և արտացոլվում այնպիսի սքանչելի ստեղծագործություններում, ինչպիսիք են՝ **Բորիս Գոդունովը, Պյոտր Մեծի արաբը, Պոլտավան, Պղնձե հեծյալը**: Պատմական ողբերգության մի հանճարեղ նմուշ է **Բորիս Գոդունով** դրաման, ուր առաջին անգամ իբրև պատմության հիմնական վճռական ուժ հանդես է գալիս ժողովուրդը: Իշխանատենչ Գոդունովի անփառունակ վախճանի պատճառը Պուշկինը համարում է ամենից առաջ նրա թշնամական վերաբերմունքը ժողովրդի նկատմամբ: Ժողովուրդը հակադրվում է արքային՝ իբրև ահեղ թշնամական ուժի: Քաղաքական խոր իմաստ է ամփոփել պոետը «Ժողովրդական կարծիքով են ուժեղ», «Ժողովուրդը լուռ է» արտահայտություններում:

Ժողովրդի, մարդկության ճակատագիրն է Պուշկինի մի այլ ստեղծագործության՝ **Պղնձե հեծյալի** պաթոսի հիմնական աղբյուրը: Պուշկինը հիացած է Պյոտրի՝ Ռուսաստանի մեծ վերանորոգչի գործունեությամբ, մարդ, որը «պատուհան բացեց դեպի Եվրոպա»: Բայց, ինչպես նշել է պոետը, անհամբեր էր Պյոտր I-ը. մարմնավորելով նոր գաղափարները՝ նա, թերևս, «խիստ կտրուկ շրջադարձ տվեց պետության վիթխարի անիվներին»: Ինչպես Ռադիշչևը, Պուշկինը ևս, հանձին Պյոտրի տեսնում է ո՛չ միայն տաղանդավոր գործչի, այլև ինքնիշխան ու դաժան բռնակալի: **Պղնձե հեծյալը** պոեմի հիմքը «ճակատագրի հզոր տիրակալի»՝ Պյոտր I-ի և հենց այդ ճակատագրի զոհը դարձած «խեղճ» Եվգենիի հակադրությունն է: Վերածնվող ժողովրդի և ինքնակալության գալիք մարտերի հանճարեղ կանխատեսությունն է այս պոեմը:

30-ական թվականներին պոետը համառորեն որոնում է դեպի ժողովուրդը տանող ուղիներ: Դեռևս 1824 թվականին, գտնվելով Միխայլովսկոյեում, նա խնդրում է իրեն նյութեր ուղարկել Պուգաչովի, «ռուսական պատմության միակ պոետական անձնավորության»՝ Ռազինի վերաբերյալ, իսկ 1826 թվականին ստեղծում է իր նշանավոր երգերը **Ստենկա Ռազինի մասին**, որը դեկաբրիստների տապալման մռայլ մթնոլորտում հնչում էր իբրև ժողովրդական մասսաների անկոտրում կամքի, անսասան քաջության հիմն:

Ժողովուրդը, հասարակության մեջ գրաված նրա դիրքն են արտացոլված **Գորյուխինո գյուղի պատմությունը, Դուբրովսկի, Պուգաչովի պատմությունը, Կապիտանի աղջիկը, Ասպետական ժամանակների պատկերները** և այլ ստեղծագործություններում: Ակնբախ են հեղինակի կարեկցանքը հասարակ ժողովրդի նկատմամբ, նրա տառապանքների համար կրած անսահման վիշտը: **Գորյուխինո գյուղի պատմությունը** անավարտ գործի առաջին իսկ նախադասությունը տոն է տալիս հետագա պատումին. «Երկրագնդի վրա ավելի քան 240 դեսյատին է գրավում այն երկիրը, որի մայրաքաղաքի անունն է Գորյուխինո»: Գորյուխինոն— վշտի երկիրը՝ այդ Ռուսաստանն է, որ անկում է ապրել կալվածատերերի իշխանության, ինքնակալական կարգերի հետևանքով:

**Գորյուխինո գյուղի պատմության** մեջ ներկայացվող ժողովրդական խռովություններն ու ապստամբությունները նկարագրվել են նաև Պուգաչովի ապստամբությանը նվիրված գործերում: 1833 թվականին Ալեքսանդր Սերգեևիչն ավարտում է **Պուգաչովի պատմությունը**: Չնայած խիստ գրաքննու-

թյանը, մեծ արվեստագետը Պուգաչովին չի ներկայացրել իբրև ի ծնե չարագործ: Ընդհակառակը, նա հետևողականորեն ընդգծում է պուգաչովյան շարժման բնույթը, թափը, ո՛չ միայն կազակների, այլև ճորտ գյուղացիների ու լեռնագործ բանվորների մասնակցությունը դրան: Պուգաչովյան ապստամբության իրադարձությունները են արտացոլված նաև ռուս դասական արձակի լավագույն նմուշներից մեկում՝ **Կապիտանի աղջիկը** վիպակում: Պուգաչովն այստեղ ճնշվածների անխոնջ պաշտպանն է, որ անողոք պատժում է բոլոր նրանց, ովքեր նեղում են ժողովրդին:

Պուշկինի՝ ժողովրդի հետ ունեցած սերտ կապի ցայտուն վկայությունն են ժողովրդական բանահյուսության հետ անմիջականորեն առնչվող նրա ստեղծագործությունները, որոնք համակված են կյանքի և բարու անհաղթելի ուժի նկատմամբ տածած խոր հավատով: Դրանք Սալթան արքայի, տերտերի ու նրա Բալդի ծառայի, ձկնորսի և ձկնիկի, ոսկե աքաղաղի, քնած արքայադստեր մասին և այլ սքանչելի հեքիաթներն են, ուր արտացոլվում են ռուս ժողովրդի բարի, ավանդական բարքերը, դրսևորվում է նրա ոգին... Իր իսկ՝ պոետի խոստովանությամբ, նրա ստեղծագործության «ոգին է ռուսական, այդ Ռուսաստանն է բուրում»:

Ա. Ս. Պուշկինը գրել է նաև արձակ գործեր՝ ժամանակակից թեմաներով: Դրանցից են **Հանգուցյալ Իվան Պետրովիչ Բելկինի վիպակները**, որոնց հերոսները սովորական մարդիկ են՝ իրենց անհատականությամբ, սոցիալական պատկանելությանը բնորոշ արարքներով:

Պուշկինի ստեղծագործության հիմնական միտումներից մեկը գոյություն ունեցող աշխարհի բանաստեղծական վերակերտումն է: Հրապուրանքը Շեքսպիրի դրամատուրգիայով, հիացմունքը նրա բնածին տաղանդի հզոր ուժով՝ պոետին հանգեցնում են փոքրիկ ողբերգություններ ստեղծելու մտքին: Իրար են հաջորդում նրա **Ժլատ ասպետը, Մոցարտը և Սալիերին, Քարե հյուրը, Խրախճանք ժանտախտի պահին** դրամաները. որքա՜ն լայն է պուշկինյան այս փոքրիկ ողբերգությունների թեմատիկ ընդգրկումը: **Մոցարտը և Սալիերին** դրամայում բացահայտվում է արվեստագետի և գեղարվեստական ստեղծագործության թեման. **Ժլատ ասպետի** նյութը պոետը քաղել է անձնական կյանքից. ներկայացնելով իր հոր ժլատությունը՝ պոետը մերկացնում է դրամի ապականիչ էությունը, ցույց տալիս, թե ինչպես է անդրադառնում այն մարդկային հարաբերությունների վրա: Պուշկինի ստեղծագործական երևակայությունը գրավում է և Դոն-Ժուանի լեգենդը. նրան նկատի ունի պոետն իր **Քարե հյուրը** ողբերգության մեջ՝ ամենայն խորությամբ բացահայտելով հերոսի ներաշխարհը: Այս փոքրիկ ողբերգությունները՝ դրամատիկական արվեստի այդ փայլուն նմուշները, մեծ նշանակություն ունեցան ռուս գրականության ռեալիզմի ձևավորման ու զարգացման համար:

Ալեքսանդր Սերգեևիչի ստեղծագործության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում **Եվգենի Օնեգինը**— այս սքանչելի չափածո վեպը, որի մասին ինքը՝ պոետը, հաճախ է խոսել որպես իր լավագույն, ամենասիրած ստեղծագործության: Վեպը հյուսվել է աստիճանաբար, տարիների ընթացքում (1823—1831) և արտահայտել ռուսական հասարակության պատմության տարբեր պահերը: Բելինսկու բնորոշմամբ **Եվգենի Օնեգինը** դարձավ «Ռուսական կյանքի հանրագիտարանը»: Նրա տողերում մեր առջև առաջին անգամ բացահայտվեց ռուսական «իրական աշխարհը»,— գրել է Դոբրոլյուբովը: Պուշկինն այստեղ բացահայտում է ժամանակի իրականության բացասական երևույթները, ճորտատիրական կարգերի այլանդակությունն ու անմարդկայնությունը: Ռեալիստ արվեստագետն անողոք ճշմարտացիությամբ դատապարտում է ազնվականությանը, նրա հասարակական անօգտակարությունը, կտրվածությունը ժողովրդի կյանքից:

**Եվգենի Օնեգինը** վիթխարի ազդեցություն ունեցավ հետագա ռուս գրականության վրա. «Իր ժամանակի հանճարեղ երկի՝ Գրիբոյեդովի **Խելքից պատուհասի** հետ միասին Պուշկինի չափածո վեպը դրեց ռուսական նոր պոեզիայի, ռուսական նոր գրականության ամուր հիմքը... այդ երկու երկերը... դպրոց դարձան, որից դուրս եկան և՛ Լերմոնտովը, և՛ Գոգոլը: Առանց **Օնեգինի**



անհնար կլիներ **Մեր ժամանակի հերոսը,** ճիշտ այնպես, ինչպես առանց **Օնեգինի** ու **Խելքից պատուհասի** Գոգոլն իրեն պատրաստ չէր զգա պատկերելու ռուսական իրականությունը, որը նա տվել է այնպիսի խորությամբ ու ճշմարտացիությամբ»,— գրել է Վ. Գ. Բելինսկին իր **Եվգենի Օնեգին** ընդարձակ ու խոր վերլուծականում:

Պուշկինը մեծ էր ո՛չ միայն որպես պոետ, այլև իբրև մարդ: Ռուսական կուլտուրայի պատմության մեջ դժվար է գտնել այնպիսի բազմակողմանի անհատականություն, ինչպիսին Ալեքսանդր Սերգեևիչն էր: 1830 թվականին բանաստեղծ Ա. Դելվիգի հետ, նա ձեռնամուխ է լինում «Литературная газета»-ի հրատարակմանը, որի էջերից սկզբունքային ակտիվ պայքար է ծավալվում ընդդեմ ռեակցիոն պաշտոնական ժուռնալիստիկայի: 1836 թվականից Պուշկինն սկսեց հրատարակել «Современник» գրական ամսագիրը, որի խմբագիրը հետագայում դարձավ Ն. Ա. Նեկրասովը: Ամսագրի գլխավոր թեման ժողովուրդն էր և հասարակության մեջ նրա գրաված դիրքը:

Լինելով ժամանակի ամենազարգացած մարդկանցից մեկը՝ Պուշկինը բարձր կրթությունը համարում էր ամեն մի իսկական գրողի առաջին էական հատկանիշը: Նրա ստեղծագործությունը մարդասիրական վեհ գաղափարների տարփողումն էր և հանուն ժողովրդի լավագույն ապագայի մղվող պայքարի կոչ:

Իր կենդանության օրոք արդեն Պուշկինն ազգային հպարտություն էր՝ մարմնավորելով ռուս գրականության ողջ լավագույնը. «...բոլոր պոետների, իր ժամանակակիցների համար նա երկնքից նետված բանաստեղծական այն կրակն էր, որից, ինչպես մոմից, բռնկեցին ինքնատիպ այլ պոետներ»,— գրել է նրա մասին Ն. Վ. Գոգոլը: «Պուշկինը մեր ուսուցիչն է»,— բազմիցս խոստովանել է Լ. Ն. Տոլստոյը: «Պուշկինը մեզ համար սկիզբն է բոլոր սկիզբների»,— ասել է Ա. Մ. Գորկին:

Մեծ պոետի ստեղծագործությունները բարձր է գնահատել Վ. Ի. Լենինը: Ն. Կ. Կրուպսկայայի հուշերում կարդում ենք, որ սիբիրյան աքսորում Իլյիչը վերընթերցնում էր ռուս գրականության կլասիկներին, իսկ ամենից շատ սիրում էր Պուշկինին:

Պուշկինի գրական ժառանգությունը վիթխարի պրոգրեսիվ ազդեցություն է գործել մեր բազմազգ ժողովուրդների գրականության, կուլտուրայի վրա: 1902 թ. Յուրի Վեսելովսկուն ուղղած նամակում Հովհաննես Թումանյանը գրել է. «...ռուս պոետների (Պուշկինի, Լերմոնտովի) ստեղծագործություններն ինձ ծանոթ են դեռ մանկուց և այնպես եմ սիրել դրանք, որ անկասկած պետք է որ ինձ վրա ազդեցություն գործեին»: Պուշկինյան ժառանգության կրքոտ պրոպագանդիստն էր Միքայել Նալբանդյանը: Բացի Նալբանդյանից, Պուշկինի բանաստեղծությունները սիրով թարգմանել են նաև Ս. Շահազիզը, Հ. Թումանյանը, Ալ. Ծատուրյանը, Հ. Հովհաննիսյանը, Ե. Չարենցը, Գ. Սարյանը, Ս. Կապուտիկյանը, Վ. Դավթյանը, Պ. Միքայելյանը և ուրիշներ: Այժմ էլ Սովետական Հայաստանի գրողները միշտ դիմում են Պուշկինի հարուստ ժառանգությանը:

Ռուս մեծագույն ազգային պոետը խորապես հարգում և գնահատում էր այլ երկրների փոքր ու մեծ ժողովուրդների գրականությունն ու կուլտուրան, կոչում նրանց եղբայրության: Ահա թե ինչու այս նշանավոր տարեդարձի օրերին ողջ առաջադեմ մարդկությունն արժանին է հատուցում Պուշկինի մեծ հանճարին:

ԹԱՄԱՐ ՊԱՊՅԱՆ

# ՄԵԾ ՄՏԱԾՈՂՆ ՈՒ ՀՈՒՄԱՆԻՍՏԸ

(Իմանուել Կանտի ծննդյան 250-ամյակի առթիվ)



Գրեթե երկու հարյուրամյակ է, անա, ինչ շարունակվում է վեճը ոչ միայն այն մասին, թե ինչպես պետք է գնահատել Կանտի փիլիսոփայությունն ամբողջությամբ վերցրած, այլև այն մասին, թե որն է նրա այս կամ այն դրույթի իսկական իմաստը և թե ինչպես էր հասկանում ինքն այդ դրույթները: Դրա բացատրությունը շատ պարզ է. անցյալի գաղափարական ժառանգությունը սոսկ մեռյալ բեռ չէ, այլ դաս, հիշեցում, պատվիրան: Բնական է, որ հասարակական զարգացման տարբեր ժամանակաշրջաններում զանազան սոցիալական ուժերի ներկայացուցիչները պատմական ժառանգությունից քաղում էին տարբեր դասեր: Անցյալը իմաստավորվում էր ներկայի լույսի տակ, կրկին ու կրկին վերաիմաստավորվում, դառնալով գաղափարական պայքարի առարկան ու զենքը:

Արդեն գերմանական դասական փիլիսոփայության շրջանակներում Կանտի ուսմունքը տարբեր կերպ էին ըմբռնում ու գնահատում հետևողական իդեալիստ Ֆիխտեն և քիչ ավելի ուշ՝ մատերիալիստ Ֆոյերբախը: Կանտի վերաբերյալ վեճը մինչև մեր օրերն էլ շարունակվում է: Եվ վեճերից ու դիսկուսիաներից պարզվում է հետևյալ պարադոքսային իրավիճակը. արդեն իր դարն ապրող բուրժուազիայի գաղափարախոսները չեն կարողանում հասկանալ ու գնահատել բուրժուական աշխարհայացքի ավելի վաղ շրջանի ներկայացուցիչներից մեկի փիլիսոփայության մեծ նշանակությունը: Նրա առաջադիմական գաղափարների պաշտպանությունը հնարավոր է դառնում միայն սոցիալիստական գաղափարախոսության դիրքերից, և դա գաղափարական պայքարի յուրօրինակ դրսևորումներից մեկն է:

Հարկ է, սակայն, նշել, որ Կանտի փիլիսոփայության վերաբերյալ վեճերը թափանցել են նաև սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ:

Դեռ դարասկզբին գերմանական սոցիալ-դեմոկրատիայի որոշ ներկայացուցիչներ, որոնք չէին հասկացել ոչ Մարքսին, ոչ էլ Կանտին և առավել ևս անընդունակ էին ըմբռնելու մարքսիստական փիլիսոփայության ու նախորդ փիլիսոփայական սիստեմների սկզբունքային տարբերության ամբողջ խորությունը, հանգեցին այն մտքին, թե անհրաժեշտ է մարքսիզմի փիլիսոփայական տեսությունը «լրացնել» Կանտի իմացաբանական ու բարոյագիտական ուսմունքով: Մարքսիզմի այդ, այսպես կոչված, «նեոկանտական ռևիզիան» հանդիպեց հետևողական, հեղափոխական մարքսիստների վճռական հակահարվածին: Մասնավորապես, նրանց առջև խնդիր ծառացավ ցույց տալ Մարքսի ու Կանտի ելակետային փիլիսոփայական սկզբունքների անհաշտելիությունը, իսկ որոշ առումով՝ նաև հակադրությունը, և մարքսիզմի փիլիսոփայության տեսակետից քննադատության ենթարկել կանտականության հիմնական գաղափարները:

Սակայն ինքնին արդարացի և անհրաժեշտ այդ պայքարի պայմաններում երբեմն առեղծվում էր այն տպավորությունը, թե իբր մարքսիստական քննադատության գլխավոր կամ նույնիսկ միակ խնդիրն է՝ «մերկացնել», «դեն նետել» հենց իրեն՝ Կանտին: Բացի դրանից, կանտյան ուսմունքի և ընդհանրապես կանտականության դեմ ուղղված քննադատությունը հաճախ կրում էր ոչ-դիալեկտիկական, ուղղագիծ ժխտման բնույթ: Վ. Ի. Լենինը այս առթիվ գրել է. «Պլեխանովը քննադատում է կանտականությունը (և ագնոստիցիզմը ընդհանրապես) ավելի վուլգար-մատերիալիստական, քան դիալեկտիկական-մատերիալիստական տեսակետից, որքանով որ նա սոսկ à limine մերժում է նրանց դատողությունները, և ոչ թե ուղղում (ինչպես Հեգելն էր ուղղում Կանտին) այդ դատողությունները... Մարքսիստները քննադատում էին (XX դարի սկզբին) և կանտականներին և յումիստներին ավելի ֆոյերբախաբար (և բյուխներաբար), քան հեգելաբար» (Վ. Ի. Լենին, Երկեր, IV հրատ., հ. 38, էջ 216—217): Եթե այդ թերությունները, ինչպես գտնում էր Վ. Ի. Լենինը, հատուկ են նույնիսկ Պլեխանովի աշխատություններին, ապա վուլգար-մատերիալիստական, «բյուխներյան» մոտեցումն էլ ավելի մեծ չափով հատուկ էր Կանտի փիլիսոփայության քննադատական վերլուծությանը նվիրված ավելի ուշ շրջանի աշխատություններին:

Գերմանական դասական փիլիսոփայության և, մասնավորապես, Կանտի փիլիսոփայական հայացքների մարքս-լենինյան ըմբռնմանն ու զարգացմանը իր ժամանակին մեծ վնաս հասցրեց այն ֆորմուլան, որի համաձայն գերմանական դասական իդեալիզմը արիստոկրատական ռեակցիա է ֆրանսիական բուրժուական հեղափոխության նկատմամբ: Ինչ վերաբերում է Կ. Մարքսին, ապա Կանտի փիլիսոփայության վերաբերյալ նրա հայացքը էապես այլ էր: Բնանվիճելով իրավունքի ռեակցիոն պատմական դպրոցի նախահայր իրավաբան Գ. Հուգոյի հետ, Մարքսը բնական իրավունքի նրա կոնցեպցիան անվանում է «ֆրանսիական ancien régime-ի գերմանական տեսություն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. I, стр. 88), այսինքն՝ հին ռեժիմի գերմանական տեսություն: Ուստի, ըստ Մարքսի, ֆրանսիական հեղափոխության նկատմամբ արիստոկրատական (ազնվական) ռեակցիան կարելի է անվանել Գ. Հուգոյի հետադիմական տեսությունը: Դրան հակառակ, Մարքսը գտնում էր, որ «...Կանտի փիլիսոփայությունը իրավացիորեն կարելի է համարել ֆրանսիական հեղափոխության գերմանական տեսությունը...» (նույն տեղը): Այսպիսով, Մարքսի գնահատությամբ, Կանտի փիլիսոփայությունը չի հակադրվում բուրժուական հեղափոխության գաղափարախոսությանը, այլ նրա յուրահատուկ, «գերմանական» արտահայտությունն է: Այն հանգամանքը, որ Կանտի փիլիսոփայությունը ֆրանսիական հեղափոխության հենց «գերմանական տեսությունն է» (ինչպես ընդգծել է Մարքսը), նշանակում է, որ հակաֆեոդալական շարժման գաղափարները, շահերն ու խնդիրները Կանտի մոտ արտահայտված են անհետևողականորեն, հակասական, «կոմպրոմիսային» ձևով՝ հետամնաց և մասնատված Գերմանիայի սոցիալ-տնտեսական պայմաններին համապատասխան: Իսկն ասած, Կանտի հենց այդ հակասականությունը, կոմպրոմիսայնությունն ու «լիբերալիզմն » է կազմում նրա առաջադրած տեսական լուծումների այն անհամարժեքության հիմքը, որն իր հերթին նպաստում էր կանտյան սիստեմի բազմաթիվ տարբեր մեկնաբանություններին:

Կանտի փիլիսոփայական տեսությունը բաղկացած է երկու հիմնական մասից՝ տեսականից և գործնականից, որոնց համապատասխան նա տարբերում է տեսական (սպեկուլյատիվ) և գործնական բանականությունը: Կանտի տեսական փիլիսոփայությունը, ըստ էության, բնության (և ոչ թե հասարակության) իմացության տեսությունն է, մաթեմատիկական և բնագիտական իմացության տեսություն, որի քննարկման կապակցությամբ Կանտն առաջադրում է իր հիմնական իմացաբանական դրույթները: Քանի որ, կարծում է Կանտը, մաթեմատիկական և բնագիտական իմացությունը կարգավորվում է զգայականության ու բանականության ապրիորի ձևերի միջոցով, ապա այն չի կարող վերաբերվել իրերին այնպես, ինչպես դրանք ինքնին գոյություն ունեն, այլ վերաբերում է երևույթներին՝ իրերին, ինչպես որ դրանք ներկայանում են մեզ՝ ընկալման և իմացության սուբյեկտիվ պայմաններին համապատասխան: Այստեղից էլ բխում է Կանտի ելակետային իմացաբանական դիրքավորման այն հակասականությունը, որը թույլ է տալիս ագնոստիցիզմ տեսնել նրա կոնցեպցիայի մեջ, ինչպես նաև քննադատել նրան «ձախից» և «աջից»: Ինքնին իրերը պետք է գոյություն ունենան, որպեսզի ազդեն զգայականության վրա, դրանով իսկ մեզ հասցնելով իմացության բովանդակությունը: Բայց դրա հետ միասին այդ իրերը ինքնին անմատչելի են մեր իմացությանը, անիմանալի են: «Կանտի փիլիսոփայության հիմնական գիծը,— գրել է այդ կապակցությամբ Լենինը,— մատերիալիզմի և իդեալիզմի հաշտեցումն է, կոմպրոմիսը մեկի և մյուսի միջև, այսպես, հակադիր փիլիսոփայական ուղղությունների զուգակցումը մի սիստեմի մեջ: Երբ Կանտը ենթադրում է, որ մեր մտա-

պատկերներին համապատասխանում է ինչ-որ բան մեզնից դուրս, ինչ-որ ինքնին իր,— Կանտն այստեղ մատերիալիստ է: Երբ նա այդ ինքնին իրը հայտարարում է անիմանալի, տրանսցենդենտ, այնկողմնային,— Կանտը հանդես է գալիս որպես իդեալիստ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 257):

Զուտ բանականության քննադատությունը, որտեղ Կանտը քննության է առնում իր իմացաբանական հիմնական դրույթները, իրավացիորեն համարվում է մեծ փիլիսոփայի առավել աչքի ընկնող երկերից մեկը, իսկ այդ երկի բուն էությունը, դրան համապատասխան, համարվում է նրա իմացաբանական տեսությունը: Սակայն ինքը՝ Կանտը, բավականաչափ հիմք ունենալով, շատ ավելի ճշգրիտ է գնահատել իր դիրքը, նշելով, որ միշտ էլ իր փիլիսոփայական խորհրդածությունների կենտրոնում գտնվել է մարդու պրոբլեմը: Իր Մարդաբանությունը պրագմատիկական տեսակետից աշխատության մեջ նա գրել է. «Կուլտուրայի բոլոր հաջողությունները, որոնք դպրոց են ծառայում մարդու համար, նպատակ ունեն կյանքում կիրառել ձեռք բերված գիտելիքներն ու հմտությունները: Բայց աշխարհի ամենագլխավոր առարկան, որի նկատմամբ այդ գիտելիքները կարող են կիրառվել, մարդն է, որովհետև նա է իր համար իր վերջին նպատակը» (Эммануил Кант, Соч., т. 6, М., 1966, стр. 351)[1]: Այդ «ամենագլխավոր առարկան» Կանտը երբեք աչքաթող չէր անում, ինչ հարցեր էլ որ քննելիս լիներ: Դրա ամենացայտուն վկայությունն են նրա երեք «Քննադատությունների»՝ «Զուտ բանականության քննադատության», «Գործնական բանականության քննադատության», «Դատողականության քննադատության» շաղկապվածությունն ու հիմնական հումանիստական նպատակասլացությունը:

Արդեն Կանտի նշանավոր աշխատությունների հենց վերնագրերում ընդգծվում է այն մոտեցումը, որով ղեկավարվում է փիլիսոփան, «Քննադատությունը» այն ժամանակի ծնունդն ու ոգեցույցն էր, երբ կրկին ու կրկին, արդեն «Բանականության» տեսակետից անհրաժեշտ էր պատասխանել այն հարցին, թե որն է մարդու տեղն ու դերը աշխարհում: Նկատի ունենալով հատկապես այդ, Կանտը գրել է. «Մեր դարը քննադատության իսկական դար է, քննադատություն, որին պետք է ենթարկվի ամեն ինչ: Կրոնը իր սրբությամբ և օրենսդրությունը իր վեհությամբ ուզում են քննադատությունից զերծ մնալ: Սակայն այդ դեպքում նրանք իրավացիորեն կասկած են հարուցում և կորցնում են այն անկեղծ հարգանքի իրավունքը, որ բանականությունը ցույց է տալիս միայն այն բանին, ինչը կարող է անդրդվելի մնալ նրա ազատ և բացահայտ փորձության հանդեպ» (3, 75): Կանտը ներգործել է հետագա առաջադիմական զարգացման վրա ոչ միայն իր այս կամ այն կոնկրետ ուսմունքով, այլև ամենից առաջ այդ քննադատականության ոգով (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 22):

Միշտ էլ նպատակ ունենալով իմաստավորել մարդուն որպես բանական էակի (իսկ մեծ հումանիստի տեսակետից «բանական» նշանակում է ամենից առաջ «բարոյական») Կանտը տեսնում է քննադատության երկու հիմնական օբյեկտ, այն է դոգմատիզմը փիլիսոփայական մտածողության մեջ և այսպես կոչված ռացիոնալ աստվածաբանությունը:

Ըստ Կանտի, դոգմատիզմը բանականության կատաղի թշնամին է: Դոգմատիզմի վտանգն այն է, որ նա հանդգնում է «առաջ ընթանալ միմիայն հասկացությունների (փիլիսոփայական) միջոցով իրագործվող զուտ ճանաչողության օգնությամբ, բանականության կողմից վաղուց արդեն կիրառվող սկզբունքների համաձայն, իրազեկ չդառնալով այդ սկզբունքների նկատմամբ բանականության իրավունքներին և այն եղանակին, որով նա հասել է դրանց» (3, 98—99): Ըստ Կանտի, նույնքան սպեկուլյատիվ ու մետաֆիզիկական, ուստի և հակաբանական է նաև ռացիոնալ աստվածաբանությունը: Կանտը հետևողականորեն և մեթոդիկ կերպով ժխտում է ոչ միայն Վոլֆի՝ Գերմանիայում այդ ուղղության ամենաազդեցիկ ներկայացուցչի, փաստարկները, այլև աստծու գոյությունը «ռացիոնալորեն» գիտականորեն ապացուցելու նախորդ բոլոր փորձերը: Դրանով իսկ նա աստծուն, Էնգելսի արտահայտությամբ, «իջեցնում է» մինչև «գործնական բանականության կանխադրույթը (պոստուլատը)»: Ըստ Կանտի, աստծու մասին խոսելու համար տեղին է միայն «...հնարավոր հիպոթեզի համեստ լեզուն» (3, 531): Աստծու գոյությունը, գտնում էր մեծ փիլիսոփան, ճիշտ է, կարելի է ընդունել «գթասիրությունից դրդված», «բայց դա չի կարելի ընդունել անհերքելի ապացույցի իրավունքով» (3, 548):

Հայտնի է, թե որքան բարձր էր գնահատում Ֆ. Էնգելսը Է. Կանտի կոսմոգոնիական այն հայացքը, որը, հաղթահարելով տիեզերքի ստեղծման առաջին մղումի կրոնական տեսակետը, երկրագունդն ու ողջ արևային համակարգը քննության առավ ժամանակի ու տարա-

[1] Հետագայում Կանտի աշխատություններից բերված քաղվածքները տրվում են բուն տեքստում, նշելով միայն տվյալ հրատարակության հատորներն ու էջերը:



ծության բնականոն զարգացման մեջ: «Երկնային ներկա բոլոր մարմինների՝ պտտվող միգամած զանգվածներից առաջանալու կանտյան թեորիան, Կոպերնիկոսից հետո, աստղագիտության մեծագույն նվաճումն էր: Առաջին անգամ սասանվեց այն պատկերացումը, որի համաձայն իբր թե բնությունը որևէ պատմություն չունի ժամանակի մեջ: Մինչ այդ կարծում էին, թե երկնային մարմինները ի սկզբանե պտտվում են միևնույն առանցքի շուրջը և մնում են միևնույն վիճակներում: Ու թեև երկնային առանձին մարմինների վրա օրգանական խնդիրները մեռնում էին, բայց և այնպես տեսակներն ու տոհմերն անփոփոխ էին համարվում: Անշուշտ, բոլորին էլ ակներև էր, որ բնությունը մշտապես շարժվում է, բայց այդ շարժումը պատկերացվում էր որպես միևնույն պրոցեսների անվերջ կրկնություն: Մետաֆիզիկական այս մտածելակերպում Կանտն առաջին ճեղքը բացեց, ընդ որում դա կատարեց այնպիսի գիտական եղանակով, որ նրա վկայակոչած փաստարկների մեծ մասն այսօր էլ պահպանում են իրենց նշանակությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20, стр. 56—57):

Կանտն այն միտքն արտահայտեց, թե մեր գալակտիկայից բացի կան և բազմաթիվ ու վիթխարի այլ գալակտիկաներ, որոնց ծագումն ու զարգացումը կատարվել է միևնույն ֆիզիկական օրենքներով: Այսպիսով, ժամանակի ու տարածության մեջ տիեզերքի զարգացման կանտյան ըմբռնումը գիտական խոշոր ներդրում հանդիսացավ մարդկային մտքի պատմության գանձարանում:

Իհարկե, չի կարելի մոռանալ, որ կրոնի կանտյան քննադատությունը խիստ անհետևողական է, և դրան պետք է հատուկ ուշադրություն դարձնել: Սակայն աստծու գոյաբանական լինելության, այսինքն՝ ամեն մի կրոնի ելակետային դոգմայի հերքման բուն փաստը մեծագույն հանդգնություն էր կիսաֆեոդալական Գերմանիայի պայմաններում, որն ամբողջապես տոգորված էր կրոնական կեղծ բարեպաշտության ոգով: Կանտի համարձակությունը նախ ըստ արժանվույն «գնահատեց» պրուսական գրաքննությունը. Քյոնիգսբերգի համալսարանի պրոֆեսորին մի որոշ ժամանակ ընդհանրապես արգելեցին հանդես գալ կրոնի հարցերի շուրջը:

Կանտի փիլիսոփայությունը, որ իր էությամբ քննադատական էր, սոսկ միայն կործանարար, հերքող փիլիսոփայություն չէր: Նրա ոչ պակաս կարևոր արժանիքն այն է, որ պարունակում է այն բոլոր հարցերի դրական լուծումը, որոնք փիլիսոփան առավել կարևոր էր համարում: Այդ, այսինքն՝ պոզիտիվ տեսակետից Կանտն իր կարևորագույն խնդիրն էր համարում «ցույց տալ գործնական և սպեկուլյատիվ բանականության միասնությունը մեկ ընդհանուր սկզբունքի մեջ» (4, (I), 226):

Կանտի համար գործնական փիլիսոփայությունը բնավ երկրորդային և երկրորդական չէ տեսական փիլիսոփայության նկատմամբ: Վերջիվերջո այն փիլիսոփայի համար, որը գտնում էր, թե մարդը «ինքն է իր վերջին նպատակը», գործնական բանականությունը որոշակի առաջնություն ունի տեսականի նկատմամբ: Չէ՛ որ գործնական բանականությունը, ըստ էության, մարդկային այն առանձնահատուկ հարաբերությունների, շահերի ու նպատակների բնագավառն է, որոնք, Կանտի կարծիքով, ենթակա են միայն բարոյագիտական իմաստավորման: Բայց, այնուամենայնիվ, հենց այստեղ պետք է լուծվի Կանտի համար գլխավոր այն հարցը, թե մարդը ինչ տեղ պետք է գրավի աշխարհում և որն է նրա դերը՝ որպես բանական էակի: Ուստի գործնական բանականությունը տեսականի հետ մեկ «միասնության սկզբունքի» մեջ զուգակցելու խնդրի աղբյուրը մարդկային բանականության սոսկ անխուսափելի պահանջմունքը չէ, բանականություն, որը լիակատար բավարարում է գտնում «իր իմացության լիովին սիստեմավորված միասնության» մեջ: Հարցը, ըստ էության, ավելի բարդ է, իսկ նրա քննարկումը՝ ավելի կարևոր:

Գլխավոր դժվարությունը, որ Կանտը պետք է հաղթահարեր այս հարցում, հետևյալն էր. նախականտյան փիլիսոփայական ու բնագիտական կոնցեպցիաներում «տեսականի» և «գործնականի» վերաբերյալ պատկերացումները այնքան էին ջլատվել, որ դրանց միացումն արդեն անհնարին էր թվում: Այդ պատկերացումներն իրենց հիմնական բնույթով հակադրվում էին միմյանց և դրանցից որևէ մեկի ընդունումը պահանջում էր լիովին հրաժարվել մյուսից կամ մեկը լուծել մյուսի մեջ:

Այն գաղափարը, թե մարդու արարքներն առաջ բերող պատճառը հասկանալու համար դրանք պետք է քննության առնել բանականության նկատմամբ գործնական վերաբերմունքի տեսակետից, Կանտին հնարավորություն տվեց մարդուն ազատել նրան մարիոնետի մակարդակին իջեցնող ֆատալիստական անհրաժեշտությունից: Պատճառականությունը, որ գործում է մարդկային հասարակության մեջ, «ազատ է» և ոչ թե «բնական», ուստի մարդն սկզբունքորեն ազատ է իր վարմունքի մեջ: Նա բանական, ազատ, հետևաբար և բարոյական էակ է:

գացման ոլորտում կամայականությունն ու պատահականությունն են իշխում։ Ընդհակառակը, համաշխարհային պատմությունն իր օրինաչափություններն ունի և առանց ներհակություններից առաջացող տառապանքների, մարդկությունը չէր զարգանա։

Կանտը համոզված էր, որ անտագոնիզմի առկայությունը կյանքում խթանում է մարդկանց՝ տգիտությունից ընթանալ դեպի կուլտուրայի ու գիտության բարձունքները։ Առանց անտագոնիզմ հարուցող հակակրանքի, կատարյալ համաձայնության, չափավորության ու փոխադարձ սիրո, ասում էր նա, բոլոր տաղանդները կմնան իրենց սաղմնային վիճակում։

Սխալ կլիներ պատկերացնել հանճարեղ փիլիսոփայի մտածողության հարուստ համակարգն առանց դրա էական մասը հանդիսացող հավիտենական խաղաղության գաղափարի, գաղափար, որը խարսխված է Կանտի էթիկական սկզբունքների պատվանդանին։ Նրա փիլիսոփայության անաչառ հետազոտողը չի կարող անտեսել այն հանգամանքը, որ հասարակության, մարդու էության ու դերին նվիրված կանտյան հայացքները տրամաբանորեն հանգեցնում են պատերազմների՝ որպես սոցիալական կործանարար չարիքի, վերացման հետևությանը։ Ուտոպիստական տարրերի առկայությունը խնդրո առարկա նրա տվյալ հայացքում ամենևին չի նսեմացնում փիլիսոփայի արծարծած գաղափարների վեհությունն ու կենսականությունը։

Էմանուել Կանտը, լինելով խաղաղության անկեղծ ջատագով, գտնում էր, որ մարդկության առաջընթացի համար մեծագույն չարիք հանդիսացող պատերազմները պետք է վերջ ունենան։ Կգա ժամանակ, որ կիշխի հավիտենական ու մարդկության համար բաղձալի խաղաղությունը։ Այսպիսով, 180 տարի առաջ նրա գրած Հավիտենական խաղաղության առթիվ ուշագրավ աշխատությունը շարունակում է ծառայել առաջավոր մարդկության հումանիստական ձգտումներին։

Պատշաճը հատուցելով Կանտի արտահայտած գաղափարների հումանիստական, համամարդկային բովանդակությանը, պետք է ընդգծել դրանց բացառիկ կարևոր տեսական նշանակությունը։ Կարելի է վստահորեն ասել, որ բարոյագիտական մտքի պատմության մեջ Կանտն էր, որ առաջին անգամ կարողացավ որոշել բարոյականության յուրահատկությունը, նրա դերն ու նշանակությունը մարդկային համակեցության բնագավառում։

Հաստատելով մարդու կամքի ազատությունը, Կանտը, սակայն, ցավոք, դրանով չի սահմանափակվում։ Նույն Կանտը, որ առաջին քննադատության մեջ «գրոհում էր երկինքը», կրկին վերադառնում է կրոնական հավատի անհրաժեշտության գաղափարին՝ այդ ազատությունն իրականացնելու համար։ Դեպի դեիզմը վերադարձի մեջ առավել մեծ ուժգնությամբ է դրսևորվում Կանտի բարոյագիտական հոռետեսությունը։ Այդ դիրքերից աթեիզմը դիտվում է որպես ոչ-կոնստրուկտիվ գաղափար, որովհետև հավատը մի այնպիսի աշխարհակարգի նկատմամբ, որտեղ բարձրագույն բարիքն իրագործելի է, նշանակում է հավատ այդ աշխարհակարգն ստեղծող իդեալական էակի՝ աստծու գոյության և այս աշխարհում ապրած մարդու հոգու անմահության նկատմամբ։

Այստեղ Կանտն իրոք նահանջում է իր իսկ հռչակած սկզբունքներից։

Ամենաբարդ պրոբլեմներ արծարծելիս նման հակասությունն ընդհանրապես բնորոշ է փիլիսոփա, գիտնական, մարդ-Կանտին։ Այդ պատճառով էլ մեծ գերմանացու ուսմունքը խիստ և անաչառ, բայց և արդարացի ու հիմնավոր քննադատության կարիք է զգում։

Մի առիթով Ա. Էյնշտեյնին հարցրել են, թե ինչպես է նա՝ մեծ ֆիզիկոսը, վերաբերվում Կանտի՝ մեծ մետաֆիզիկի ուսմունքին։ Էյնշտեյնն ասել է, թե այդ հարցին պատասխանելն իր համար այնքան էլ հեշտ չէ, որքանով որ ամեն մի փիլիսոփա ունի իր սեփական Կանտը։ Եվ եթե իսկապես լուրջ ընդունենք Ա. Էյնշտեյնի հումորը, ապա մենք՝ մարքսիստներս էլ, ունենք մեր Կանտը, ոչ թե մտացածին և ամլացված, այլ այն Կանտը, որին կարելի է բացատրել և հասկանալ՝ իր բոլոր հակասություններով հանդերձ, որի գաղափարների հարուստ գանձարանից անվերջ կարելի է օգտվել։ Այդ Կանտին մարքսիստները ոչ որի չեն զիջի։ Նա եղել և մնում է այն մեծ փիլիսոփաներից մեկը, որի հիշատակը անկարելի է աղճատել գովասանական և հախուռն գնահատականների հեղեղով, որովհետև նրա բացառիկ հանճարը անկեղծորեն նվիրված էր մարդկության բանականության և առաջադիմության փառաբանմանը։ Հենց այդ նկատի ուներ Էնգելսը, ասելով, թե «Մենք, գերմանական սոցիալիստներս, հպարտանում ենք նրանով, որ սերում ենք ոչ միայն Սեն-Սիմոնից, Ֆուրիեից և Օուենից, այլև Կանտից, Ֆիխտեից և Հեգելից» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 323)։

**Մ. Ս. ԴԱՆԻԵԼՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու
**Լ. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԵՎՐՈՊԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՐԿՐԱԾՈՎՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. Ա. ԵԳԱՆՈՎ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*Եթե «ընդհանուր շուկայի» առևտրա-տնտեսական, իսկ վերջին ժամանակներս նաև ավելի ցայտունորեն դրսևորվող քաղաքական շահերը տարածվում են եվրոպական մայրցամաքից շատ հեռու, ապա բնավ զարմանալի չէ, որ Եվրոպայի տնտեսական համագործակցության (ԵՏՀ) համար նրա մերձակա երկրներն ու ռեգիոնները հատուկ ուշադրության առարկա են։ Եվրոպական տնտեսական համագործակցության միջերկրածովյան քաղաքականությունը, որի մասին յոթանասունական թվականների սկզբից արդեն խոսվում էր «ընդհանուր շուկայի» ղեկավար շտաբում, վկայում է, որ ԵՏՀ-ն առավել մեծ ակտիվություն է ցուցաբերում աշխարհի այդ շրջանում իր դիրքերն ամրապնդելու համար։*

*Իհարկե, «ընդհանուր շուկան» իր գործունեության առաջին փուլում ևս անտարբեր չէր միջերկրածովյան ավազանի երկրների նկատմամբ։ Այն ժամանակ, սակայն, նրա քաղաքականությունը բխում էր միջերկրածովյան առանձին երկրների հետ ԵՏՀ-ի անդամ-պետությունների անմիջական կապի սկզբունքից, ըստ որում, միայն առանձին դեպքերում էր վերոհիշյալ «համագործակցությունը» նման փոխհարաբերությունների մեջ մտնում միջերկրածովյան երկրների հետ։ Այդ քաղաքականությունը հասցրեց այն բանին, որ ԵՏՀ-ն հետզհետե Միջերկրական ծովի ավազանի պետությունների մեծ մասի հետ կապվեց ամենախայտաբղետ պայմանագրերով՝ սկսած առևտրական սակավանշանակ համաձայնագրերից, մինչև «համագործակցության» հետ ուղղակի դաշինքը։ Սակայն, փոխհարաբերությունների ամբողջ խայտաբղետությամբ հանդերձ, ցայտուն կերպով դրսևորվում էին երկու միտում՝ առևտրա-տնտեսական կապերի անկայունություն կամ կատարյալ բացակայություն Հյուսիսային Աֆրիկայի ու Մերձավոր Արևելքի հետ և միջերկրածովյան հյուսիսային առափնյա ավելի զարգացած երկրների նկատելի ներգրավում ԵՏՀ-ի շահերի ոլորտը։*

*Իրադարձությունների այդպիսի զարգացումը որոշ ժամանակ բավարարում էր եվրոպական տնտեսական համագործակցության ղեկավար գործիչներին, որոնք այդ երկու խումբ երկրներին մերթ ընդ մերթ գիտակցաբար հակադրում էին միմյանց՝ խրախուսելով արտածման ոլորտում զարգացող երկրների հետ մրցակցության ծավալումը։ Այդ քաղաքականությունը, բնականաբար, միջերկրածովյան զարգացող երկրներին տրամադրում էր ԵՏՀ-ի դեմ, երկրներ, որոնք ի դեմս վերջինի տեսնում են նեոգաղութարարական հարկադրանքի հերթական տարբերակը։*

*Այնուհանդերձ, փոխհարաբերությունների թուլության փաստը չի կարելի դիտել այն առումով, թե եվրոպական տերությունները շահագրգռված չեն պետությունների այդ խմբի հետ առևտրա-տնտեսական կապերի զարգացման հարցում։ ԵՏՀ-ի երկրները, որոնք խորապես շահագրգռված են Մերձավոր Արևելքի և հյուսիսաֆրիկյան երկրների հումքի, և, առաջին հերթին, նավթի հարցում, համառ փորձեր ձեռնարկեցին դրանց պարտադրելու առևտրական այնպիսի խստագույն կանոններ, որոնք իրենց կոնկրետ արտահայտությունը գտան գյուղատնտեսական ապրանքների ու հումքի նկատմամբ մաքսային տուրքերը մեծացնելու, նշված երկրների արտածումը սահմանափակելու և ներմուծվող ապրանքի նկատմամբ որակական պահանջները բարձրացնելու մեջ։ Զարմանալի չէ, որ ԵՏՀ-ի առևտրական այդ քաղաքականությունը է՛լ ավելի ամրապնդեց միջեր-*

վոր է քննադատաբար դիտել, այնտեղից վերցնելով միայն այն, ինչ կարող է կիրառվել և հարմարեցվել աֆրիկական «ինքնատիպությանը»:

Այն հանգամանքը, որ մարքսիզմի հիմնադիրներն սոցիալիզմը մշակել են՝ ելնելով XIX դարի կապիտալիստական Եվրոպայի կոնկրետ պայմաններից, սենեգալցի տեսաբանների համար հիմք է ծառայել եզրակացնելու, թե գիտական սոցիալիզմը չի կարող կիրառվել Տրոպիկական Աֆրիկայի մինչկապիտալիստական կառուցվածքի յուրահատուկ պայմաններում: «Աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցների այս դիրքորոշման մեջ զգացվում է նաև նեգրիտյուդի տեսության ազդեցությունը, որը մարքսիզմը դիտում է որպես եվրոպական ռացիոնալիստական մտածողության ծնունդ: Մարքսիզմը նրանց համար, ամենից առաջ, հունալատինական ռացիոնալիզմի ծնունդն է: Նեգրիտյուդի տեսաբանները քիչ ջանք չթափեցին, որպեսզի սյուրռեալիզմի, ինտուիտիվիզմի և իռացիոնալիստական այլ հոսանքների հետ միասին քննադատեն «հելլենական ռացիոնալիզմը»: Մարքսիստական հումանիզմը և գիտական սոցիալիզմը, ընդհանուր առմամբ, «աֆրիկյան սոցիալիզմի» տեսաբանների կարծիքով, աֆրիկական հողը փոխադրվելուց առաջ պետք է փոփոխությունների ենթարկվի: Հայտարարելով, թե գիտական սոցիալիզմը կիրառելի չէ Տրոպիկական Աֆրիկայի սոցիալական կառուցվածքի նկատմամբ, Սենգորը և «աֆրիկյան սոցիալիզմի» մյուս տեսաբանները մոռանում են, որ մարքսիստական գաղափարները, որոնք ծագել ու մշակվել են Եվրոպայում, վաղուց արդեն հաղթանակել են Ասիայի ու Լատինական Ամերիկայի՝ իրենց սոցիալ-տնտեսական պայմաններով և հասարակական կառուցվածքով Եվրոպայի և Հյուսիսային Ամերիկայի զարգացած հասարակություններից տրամագծորեն տարբեր մի շարք երկրներում:

Նացիոնալ-ռեֆորմիստական ուղղության գաղափարախոսները մարքսիզմի հիմնական դրույթները չեն ընդունում ոչ թե այն պատճառով, որ դրանք չեն կարող իրականացվել ու կիրառվել Տրոպիկական Աֆրիկայի երկրներում, այլ՝ որ դրանք խանգարում են նրանց մանրբուրժուական դասակարգային դիրքերը և չափավոր ռեֆորմիստական նպատակներն ու խնդիրները, որ առաջ է քաշել «աֆրիկյան սոցիալիզմը»:

«Աֆրիկյան սոցիալիզմի» կոնցեպցիայում կենտրոնական տեղ է գրավում դասակարգերի և դասակարգային պայքարի պրոբլեմը: Այս հարցում առավել ցայտուն է դրսևորվում «աֆրիկյան սոցիալիզմի» սոցիալ-ռեֆորմիստական էությունը: Սենեգալցի տեսաբանները առաջադրում են այն դրույթը, թե քանի որ աֆրիկական ավանդական համայնքը անդասակարգ է կամ, գոնե, ունի շատ թույլ արտահայտված դասակարգային դիֆերենցիացիա, հետևաբար, դասակարգային պայքարի տեսությունը պիտանի չէ աֆրիկական հասարակության համար: Դասակարգային պայքարի պրոբլեմը, թերևս, ամենից ավելի շատ տարաձայնություններ առաջացրեց աֆրիկյան գաղափարախոսների շրջանում: Եթե «աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցները մինչ այսօր դեռ շարունակում են իրենց քննադատության կրակն ուղղել դասակարգային պայքարի մարքսիստական տեսության դեմ, ապա հեղափոխական-դեմոկրատական ուղղության ներկայացուցիչները, հակաիմպերիալիստական պայքարի պրոցեսում, ժամանակին ընդունեցին դասակարգային հակասությունների առկայությունն աֆրիկական համայնքի մեջ: Ժխտելով դասակարգերի և դասակարգային պայքարի առկայությունը, «աֆրիկյան սոցիալիզմի» գաղափարախոսները փորձում են ամլացնել մարքսիստական ուսմունքը, այն զրկելով հեղափոխական-վերափոխիչ էությունից, որը, բնականաբար, չի կարող համապատասխանել «աֆրիկյան սոցիալիզմի» գաղափարախոսների մանրբուրժուական շահերին. Նրանք պարզապես վախենում են նեգրա-աֆրիկական ավանդական հասարակության արմատական փոփոխություններից ու վերափոխումներից: Լիակատար հիմքով կարելի է նրանց նկատմամբ կիրառել այն բնութագիրը, որ Վ. Ի. Լենինը տվել է դասակարգային պայքարի վերաբերյալ մանրբուրժուական դեմոկրատների ունեցած հայացքներին. «Մանրբուրժուական դեմոկրատներին հատուկ են խորշանք դասակարգային պայքարից, երազանք այն մասին, որ կառավարվեն առանց նրան, սուր ծայրերը հարթելու և հաշտեցնելու, բթացնելու ձգտում» (Երկեր, հ. 30, էջ 116):

Պնդելով, թե աֆրիկական ավանդական համայնքը անդասակարգային է, «աֆրիկյան սոցիալիզմի» գաղափարախոսները ելնում են Տրոպիկական Աֆրիկայի սոցիալական կառուցվածքի յուրահատկությունից, որտեղ հասարակությունը, բացառությամբ զարգացած հասարակական կառուցվածք ունեցող մի քանի շրջանների, իրենից ներկայացնում է, օգտագործելով արևելյան հասարակության մարքսյան բնորոշումը, «գյուղական համայնքների սիստեմ»՝ հողի կոլեկտիվ սեփականությամբ, ուր հասարակական հարաբերությունները հիմնվում էին անձնական հարաբերությունների վրա: Նեգրա-աֆրիկական հասարակությունում արտադրության հիմնական միջոցը եղել է հողը,



այն պատկանում էր ամբողջ համայնքին, որի անդամները աշխատում էին նրա վրա: Համայնքի և ոչ մի անդամ իրավունք չուներ յուրացնելու այն հողակտորը, որի վրա նա աշխատում էր, և դարձնել իր սեփականությունը: Հողը ընտանիքների միջև բաշխվում էր ընտանիքի անդամների թվի համեմատ: Հողամասը հաճախ փոխվում էր, բայց բնական նպաստավոր պայմաններում այն տրվում էր համայնքի անդամին՝ մինչև նրա կյանքի վերջը (Senghor L. S., Socialisme, Féderation, Religion, Liberté, I, Paris, 1964, p. 103): Ելնելով երկրագործական համայնքի հատկությունից, Լ. Սենգորը պնդում է, թե «այնտեղ իսկական դասակարգեր չկան», թեև ընդունում է կրոնական կաստաների առկայությունը:

«Աֆրիկյան սոցիալիզմի» տեսաբանները աֆրիկական համայնքի անդասակարգայնության դիրքերից էլ մեկնաբանում են այնպիսի մի կարևոր պրոբլեմ, ինչպիսին է պետության պրոբլեմը, որին հսկայական նշանակություն են տալիս նրանք, գիտակցելով պետության վճռական դերը ազատագրված աֆրիկական ժողովուրդների ճակատագրում:

«Աֆրիկյան սոցիալիզմի» տեսաբանների կարծիքով, դասակարգային հասարակության քաղաքական կազմակերպություն չէ պետությունը: Այս հասկացությունը նրանց մոտ բավական վերացական բնույթ ունի, քանի որ պետությունը դիտվում է տնտեսական բազիսից կտրված և դրանից անկախ: Վերնաշենքի դերի չափազանցումը և տնտեսական բազիսի անտեսումը կանխորոշվում է այն օբյեկտիվ առանձնահատկությամբ, որն առաջացել է Տրոպիկական Աֆրիկայի պետությունների կազմավորման ժամանակ: Այդ առանձնահատկության էությունն այն է, որ քաղաքական մեխանիզմը այդ պետություններում կազմակերպման և զարգացածության աստիճանով անչափ առաջ է անցել նրանց արտադրաուժերից և չի համապատասխանում տնտեսական բազիսին: Քաղաքական նոր վերնաշենքի առաջացման ժամանակ հին բազիսը մնում է նախկինը և շարունակում գոյություն ունենալ նոր վերնաշենքի հետ միասին: Նոր վերնաշենքը կարծես կախվում է հին բազիսի վրա՝ չունենալով հենարան: Հին բազիսում արտադրաուժերը դեռ չեն հասել այն մակարդակին, որ համապատասխանեն նոր վերնաշենքին:

«Աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցների՝ պետության պրոբլեմի մեկնաբանման մեջ նկատվում է պետության բուրժուական տեսությունների որոշակի ազդեցությունը, տեսություններ, որոնք փորձում են ապացուցել պետության «վերդասակարգային» բնույթը և հերքել մարքս-լենինյան ուսմունքը դրա մասին. Վ. Ի. Լենինը գրում էր, որ հազիվ թե գտնվի մի ուրիշ հարց, որը դիտավորյալ թե ոչ-դիտավորյալ կերպով բուրժուական գիտության, փիլիսոփայության, իրավագիտության, քաղաքատնտեսության և հրապարակախոսության ներկայացուցիչների կողմից այն աստիճանի խճճված լինի, որքան պետության հարցը (տե՛ս, Երկեր, հ. 29, էջ 580):

«Աֆրիկյան սոցիալիզմը» «վերդասակարգային» պետության սոցիալական բազան տեսնում է աֆրիկական ավանդական համայնքի մեջ, որտեղ չկան արտադրամիջոցների մասնավոր սեփականություն, դասակարգային շերտավորում և, հետևաբար, այստեղ պետությունը հանդես չի գալիս որպես մի դասակարգի նկատմամբ մյուսի տիրապետության ապարատ:

«Վերդասակարգային» պետության մասին դրույթը լիովին հերքվում է հենց Սենեգալի ժամանակակից սոցիալ-տնտեսական զարգացման պրակտիկայով. պետությունը, որ խրախուսում է օտարերկրյա կապիտալի ներհոսքը և արմատավորում կապիտալիստական հարաբերություններ, չի կարող դասակարգերից վեր կանգնած լինել և իրականում արտահայտում ու պաշտպանում է բուրժուազիայի շահերը:

Խոսքով հանդես գալով սոցիալիզմի օգտին, Սենգորը իրականում գործարքի մեջ է մտնում արտասահմանյան մասնավոր կապիտալի հետ, խորացնելով միջազգային կապիտալիստական սիստեմի տնտեսության մեջ Սենեգալի ինտեգրացիան: Այդ կուրսը հանգեցրեց արտասահմանյան և, հատկապես, ֆրանսիական մոնոպոլիաների տնտեսական տիրապետության ուժեղացմանը, որոնք անկախությունից հետո էլ իրենց ձեռքում են պահում երկրի տնտեսական կյանքի հիմնական լծակները:

Սենգորի կառավարության քաղաքականության դեմ հանդես են գալիս բնակչության լայն խավերը. երկրի քաղաքական անկախությունը նրանց չազատագրեց օտարերկրյա մոնոպոլիաների շահագործումից: Այդ քաղաքականությունը սուր քննադատում են երկրի առաջադեմ գործիչները: Սենեգալի աֆրիկյան անկախության կուսակցության քաղբյուրոյի անդամ Ամաթ Դանսոկոն գրում է. «Սենեգալյան իրականությունը կրկին հաստատում է, որ զարգացման կապիտալիստական ուղին, անկախ նրանից՝ կընթանա այն ազգային հիմքի վրա, թե օտարերկրյա կապիտալի օգնությամբ, ոչ մի կերպ չի կարող լուծել տնտեսական հետամնացության հաղթահարման խնդիրները, ապահովել իսկական անկախությունը» («Проблемы мира и социализма», № 12, 1973, стр. 67):

Հարկավոր է նշել, որ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, հին Արևելքի պետությունների մասին խոսելիս, ուշադրություն են նվիրել արևելյան հասարակությունների յուրահատկությանը, այն է՝ հողի մասնավոր սեփականության բացակայության պայմաններում գոյություն է ունեցել ուժեղ պետություն, որ կառավարում էր միմյանցից անջատ, ցաք ու ցրիվ այդ համայնքները: Այդ պետության ֆունկցիան հիմնականում այն էր, որ մարդկային փոխարի ռեսուրսները մոբիլիզացնի խոշոր իռիգացիոն աշխատանքների համար, շահագործի գյուղացիներին և յուրացնի հավելյալ արդյունքը: Պետությունը դարձել էր աշխատանքների մի մեծ կազմակերպիչ, այդ կազմակերպումն ու կառավարումը իրականացնելով հարկադրանքի ու շահագործման ապարատի միջոցով: Պետական իշխանությունը հենվում էր ուժի վրա և իրենից ներկայացնում մի բռնապետություն (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 496—497): Պետության այդպիսի ձևը գոյություն է ունեցել այսպես կոչված «արտադրության ասիական եղանակի» ժամանակ, որը տարբերվում էր Եվրոպայում գոյություն ունեցած մինչկապիտալիստական ֆորմացիաներից[1]:

«Աֆրիկյան սոցիալիզմի» գաղափարախոսները, ելնելով նեգրա-աֆրիկական հասարակության սոցիալական կառուցվածքի յուրահատկությունից, եզրակացնում են, թե աֆրիկական գյուղական համայնքը ավանդականորեն եղել է սոցիալիստական և կրել անհատի ու հասարակության սոցիալիստական հարաբերությունների բոլոր հատկանիշները: «Փաստ է, որ կոմունոկրատական կոլեկտիվիզմը սոցիալիզմի իսկական ձևն է»,— պնդում է Լ. Սենգորը (մեջբերումը ըստ Y. Benot, Jdéologies des indépendances africaines, Paris, Maspero, 1969 գիրքի, էջ 175):

Երբ խոսք է լինում մինչգաղութային աֆրիկական հասարակության մասին, գրեթե բոլոր աֆրիկական գաղափարախոսները հայտնում են համանման կարծիք, թե այդ հասարակության մեջ իշխել են սոցիալական ներդաշնակությունը, համերաշխությունն ու փոխօգնությունը, չեն եղել շահագործման և ոչ մի ձև, ինչպես և անտագոնիստական հակասություններ, որոնք հատուկ են դասակարգային հասարակություններին: Այսպես, օրինակ, Գանայի նախկին մինիստր Կ. Բաակոն գրել է, որ «աֆրիկական ավանդական սիստեմը եղել է հիմնականում կոմունոկրատական (համայնատիրական), այսինքն՝ սոցիալիստական: Այն եղել է այնպիսի մի հասարակություն, որտեղ բոլորն ապրում են միասնական ընտանիքով, մի հասարակություն, ուր անհատի բարեկեցությունը սերտորեն կապված է եղել հասարակությանը պատկանող բոլոր մարդկանց բարեկեցության հետ» (K. Baako, Nkrumaism, its Théorie and Practice,—„The Party (CPP journal), Accra, 1961, p. 34):

«Աֆրիկյան սոցիալիզմի» տեսաբանները դասակարգային պայքարին հակադրում են բնակչության տարբեր խավերի շահերի ընդհանրության վրա հիմնված ազգային միասնության գաղափարը:

Ազգի ստեղծման պրոբլեմը, որն առաջին անգամ ծառացել է աֆրիկյան պետությունների լիդերների առջև, բարդացել է նրանով, որ Տրոպիկական Աֆրիկայում պետության առաջացումը մեծ չափով նախորդել է ազգի ձևավորման պրոցեսին, որը աֆրիկյան շատ պետություններում դեռ չի էլ սկսվել: Ստեղծվել է այնպիսի մի իրավիճակ, որը պատմական նախադեպ չի ունեցել եվրոպական պետություններում: Ազգային ինտեգրացումը և ազգերի ձևավորման պրոցեսը նեգրա-աֆրիկական պետություններում ներքին զարգացման հետևանք չեն, ինչպես դա եղել է եվրոպական հասարակություններում, այլ տեղի են ունենում պետական ինստիտուտների միջամտության

1 Ֆրանսիացի մի քանի մարքսիստ աֆրիկագետներ հանգում են «արտադրության ասիական եղանակի» ընդունմանը՝ որպես հասարակական-տնտեսական ֆորմացիայի, որը տիրապետել է նաև մինչգաղութային Տրոպիկական Աֆրիկայում: Նշանավոր աֆրիկագետ Ժ. Սյուրե-Կանալը «արտադրության ասիական եղանակի» հիպոթեզի հետ միասին արտահայտել է նաև այն միտքը, որ մինչգաղութային Աֆրիկայում ստրկատիրության և ֆեոդալիզմի որոշ գծեր զարգացել են միաժամանակ և զուգահեռաբար, ի տարբերություն Եվրոպայի, որտեղ արտադրության այդ եղանակները պատմականորեն հաջորդել են մեկը մյուսին (տե՛ս «Проблемы докапиталистических обществ в странах Востока», М., «Наука», 1971, стр. 50):

Լեհ հետազոտող Ճ. Խոդակը գրում է, որ «բուն Աֆրիկայի տերիտորիայում ստրկավաճառությունը չի ստեղծել ոչ ստրկատիրական ֆորմացիա, ոչ էլ նոր դասակարգեր նույնիսկ այն ցեղերի մեջ, որոնց համար ստրուկների արտահանումը դարձել էր լրացուցիչ եկամտի աղբյուր» («Некоторые вопросы истории стран Африки», М., 1968, стр. 31):



շնորհիվ, որոնք խթանում են ազգի միասնության պրոցեսը[1]:

Մինչգաղութային և գաղութային ժամանակաշրջանի Տրոպիկական Աֆրիկայում ազգերի ձևավորման պրոցեսի դանդաղումը բացատրվում է, գլխավորապես, նեգրա-աֆրիկական ժողովուրդների հետամնացությամբ, որը հետևանք էր մի քանի պատմական օբյեկտիվ պատճառների և, մասնավորապես, աշխարհագրական մեկուսացման ու բնա-կլիմայական պայմանների: Սահարայի հսկայական անապատը իրենից հարավ ապրող աֆրիկական ժողովուրդներին կտրել էր Եվրոպայից ու մնացած աշխարհից և խոչընդոտում էր զարգացած քաղաքակրթությունների հետ հաղորդակցվելուն: Հողային փոխարի տարածությունները արևմուտքում և հարավում ու անանցանելի տրոպիկական անտառները կենտրոնական Աֆրիկայում նպաստում էին գյուղական համայնքների ու ցեղերի անջատվածությանն ու մեկուսացմանը:

Տրոպիկական Աֆրիկայի ժողովուրդների առաջադիմելուն լրջորեն խանգարում էր ստրկավաճառությունը, որը, վերջին հաշվով, տարավ մոտ 100—150 միլիոն մարդկային կյանք, անվերջ պատերազմների պատճառ լինելով այն ցեղերի միջև, որոնք եվրոպացիներին գերիներ էին մատակարարում իբրև ստրուկներ: XIX դարի վերջին ստրկավաճառությանը հաջորդեցին գաղութային ճնշումն ու շահագործումը: Սրանք այն խոչընդոտներն էին, որ Տրոպիկական Աֆրիկայում արգելակում էին ազգերի ձևավորմանը:

Աֆրիկական երիտասարդ պետությունների ղեկավարները հասկանում են ազգային պրոբլեմի ամբողջ կարևորությունը և իրենց ջանքերն ուղղում իրենց պետությունների տերիտորիայում ապրող էթնիկական խմբերի միավորմանը: Ազգային պրոբլեմը նրանք դիտում են պետության հետ անխզելի կապի մեջ, քանի որ պետականություն ստանալուց հետո միայն նախադրյալներ ստեղծվեցին ազգային միասնության և ազգի ձևավորման համար:

«Աֆրիկյան սոցիալիզմի» տեսաբանները ազգ հասկացությունը մեկնաբանում են պետության հասկացության նմանությամբ: Նրանք պետությունը դիտում են որպես ազգի արտահայտություն, ազգի ձևավորման միջոց: Տրոպիկական Աֆրիկայի երկրներում, որտեղ նոր է սկսվում ազգային կոնսոլիդացիայի պրոցեսը, պետությունը առաջնակարգ դեր է կատարում ազգային միասնությունը խթանելու և արագացնելու գործում:

Սակայն «աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցները ազգ հասկացությանը մոտենում են «աֆրիկական ինքնատիպության» դիրքերից: Նեգրա-աֆրիկացիների «ոգու միասնության» վրա հիմնված աֆրիկական համայնքը ներկայանում է որպես մի համախմբված սոցիալական օրգանիզմ, որը դիտվում է իբրև ապագա ազգի հիմք: Աֆրիկական ավանդական կուլտուրան, նրանց կարծիքով, պետք է ինտեգրացնող դեր կատարի ազգի ձևավորման պրոցեսում: Ազգը, նրանց մեկնաբանմամբ, պայմանավորվում է ո՛չ միայն տերիտորիայի, տնտեսական գործունեության ու լեզվի, այլ, գլխավորապես, կուլտուրական ու հոգևոր արժեքների ընդհանրությամբ: «Երբ Սենգորը խոսում է նեգրա-աֆրիկական ազգի մասին,— գրում է Դ. Թիամը,— նա այն բնորոշում է սպիրիտուալիստական-քաղաքական և քաղաքական-միստիկական ամբողջության մեջ: Նեգրա-աֆրիկական ազգը քաղաքակրթության արժեքների գումարն է, կուլտուրական այն ամբողջությունը, որ հեղինակը անվանում է «նեգրիտյուդ» (Thiam D., La politique etrangere des Etats africains, Paris, 1968, p. 47):

Կուլտուրական ընդհանրության մեջ, «աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցների կարծիքով, արդեն կան ազգային ինքնորոշման պոտենցիալ հնարավորությունները: Նրանք պնդում են, որ աֆրիկական ժողովուրդները, հակառակ գաղութարարների կուլտուրական ասիմիլյացիայի քաղաքականության, իրենց ազգային ինքնօրինակությունը ի վիճակի եղան պահպանել միայն շնորհիվ այն բանի, որ կարողացան դրան հակադրել նեգրա-աֆրիկական ժողովուրդների կուլտուրական և հոգևոր արժեքների ընդհանրությունը: Կուլտուրայի այդ ընդհանրությունը նրանք համարում են նեգրա-աֆրիկական հասարակության վերնաշենքը կանխորոշող աֆրիկական ինստիտուտների ինքնորոշման հիմքը, վերնաշենք, որը «աֆրիկյան սոցիալիզմում» հասարակության տրն-

1 Ֆրանսիացի հետազոտող Ժ. Շենոն գրում է. «Եթե Եվրոպայում ազգերի ձևավորման պրոցեսը նախորդել է ազգային պետությունների ստեղծմանը, ապա Ասիայի և Աֆրիկայի երկրներում տեղի է ունեցել հակառակ երևույթը՝ նախ կազմավորվել է միասնական պետությունը, իսկ հետո այն իր տնտեսական ու քաղաքական ֆունկցիաներով նպաստել է ազգերի ձևավորմանը: Այսպիսով, ազգերը ձևավորվել են կապիտալիզմի սաղմնավորումից դեռ առաջ» (Chesneaux J., Le processus de formation des nations en Afrique et en Asie,—„La pensée„, 1965, N 119, p. 81): Սեկու Տուրեն նշում էր, որ «հետգաղութային Աֆրիկայում որպես կանոն, պետությունը նախորդում է ազգին»:

տեսական բազիսից լիակատար անկախության մեջ է դիտվում:

Փառաբանելով հոգևոր և կուլտուրական ասպեկտները, վկայակոչելով Հեգելին, Սենգորը իդեալիստորեն է մեկնաբանում ազգը՝ որպես «ազգային ոգու» ընդհանրություն: Սենգորի կարծիքով, ազգի վճռորոշ գործոնն է «համատեղ ապրելու ցանկությունը» («За рубежом», № 13, 1973, стр. 18):

Սենգորի մոտ ազգը հանդես է գալիս որպես «ազգային ոգու» նյութականացում, որը մարմնավորված է նեգրա-աֆրիկական ժողովուրդների կուլտուրական արժեքներում, յուրաքանչյուր համայնքում և ցեղում իշխող «կոմունոկրատական» (համայնատիրական) հարաբերությունների մեջ: «Աֆրիկյան սոցիալիզմը» փորձում է այդ «կոմունոկրատական» ավանդույթների վրա կառուցել ազգային ինտեգրացիայի ապագա շենքը:

Մարդկային անհատի պրոբլեմը «աֆրիկյան սոցիալիզմի» փիլիսոփայական ու սոցիոլոգիական գաղափարների մեջ գրավում է կենտրոնական տեղերից մեկը: Նեգրիտյուդը, ինչպես հայտնի է, «աֆրիկյան սոցիալիզմի» գաղափարախոսների առաջին փորձն էր՝ տալու այդ պրոբլեմի տեսական մեկնաբանումը:

«Աֆրիկյան սոցիալիզմը» մարդկային անհատը համարում է, ինչպես և նեգրիտյուդում, ոչ թե որպես սոցիալականորեն պայմանավորված սուբյեկտ, այլ որպես մի ինդիվիդ, որը մի օղակ է մարդու և շրջապատող աշխարհի փոխհարաբերությունների բարդ միահյուսվածքի մեջ:

Հարկավոր է նշել, որ «աֆրիկյան սոցիալիզմի» մեջ չկա անհատի և ինդիվիդի հասկացությունների հստակ բնորոշումը, չկա սահմանազատում այդ երկու հասկացությունների միջև: Այնտեղ անհատը հանդես է գալիս ոչ թե որպես հասարակական հարաբերությունների սուբյեկտ, նրանց մեկնաբանմամբ անհատը կորցնում է իր հասարակական էությունը, նըմանվելով ինդիվիդ հասկացության կենսահոգեկան բովանդակությանը:

«Աֆրիկյան սոցիալիզմի» տեսաբանների համար հասարակական երևույթների մեկնաբանումների մեջ բնորոշ է մի առանձնահատկություն. նրանք հասարակական պրոբլեմները ֆոկուսավորում են անհատի պրոբլեմի մեջ, հասարակական զարգացումը հանգեցնում առանձին անհատի զարգացմանը, զուգահեռ անցկացնում անհատի ու հասարակության միջև:

Միևնույն ժամանակ անհատի մեկնաբանման մեջ մենք կարող ենք նկատել անհատին հասարակության մեջ լուծելու, անհատի գործունեությունը ամբողջ համայնքի գործունեության հետ միաձուլելու ձգտում: Այդ ձգտումը արտացոլում է անհատի հասարակական-պատմական տեղն ու դերը տոհմա-ցեղային հասարակության մեջ:

Չզարգացած հասարակական հարաբերությունների և հասարակական սեփականության տիրապետության պատճառով մարդն այդ հասարակության մեջ, որպես անհատ արտադրող, ինքնուրույնություն ձեռք չի բերում համայնքի նկատմամբ: Էնգելսը նշում էր, որ տոհմա-ցեղային հասարակության մեջ չզարգացած արտադրությունը ենթադրում էր մարդու լիակատար ենթարկումը բնությանը և իր ցեղին կամ տոհմին, որի հաստատությունները սրբազան էին մարդու համար, որը մնում էր լրիվ ենթակա «իր զգացմունքներով, մտքերով և արարքներով» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 99):

Անհատի ու հասարակության այս հարաբերակցության մեջ «աֆրիկյան սոցիալիզմի» գաղափարախոսները տեսնում են համերաշխության և հավասարության ավանդական հարաբերություններ: «Աֆրիկացի նեգրը պարփակված է ուղղահայաց և հորիզոնական համերաշխության նեղ սիստեմի մեջ, որը կապում և միաժամանակ պահում է նրան,— գրում է Սենգորը:— Սա այսօր սոցիալիզմի հռչակած ճշմարտության ամենավառ արտահայտությունն է, այսինքն՝ որ մարդն ապրում և որոշվում է միայն հասարակության մեջ և հասարակության միջոցով» (Senghor L. S., Negritude et Humanisme, Paris, 1964, p. 268):

Այստեղ համերաշխությունը հանդես է գալիս որպես բուրժուական հասարակության ինդիվիդուալիզմի և անհատի խորթացման հակաթեզ:

***

«Աֆրիկյան սոցիալիզմի» գաղափարախոսների հայացքների իրարամերժությունն արտացոլում է այն հակասությունները, որոնք կան իր դասակարգային բովանդակությամբ մանրբուրժուական այդ գաղափարախոսության բուն էության մեջ:

Բայց դրա հետ մեկտեղ, ինչպես նացիոնալիզմի ամեն մի գաղափարախոսություն, «աֆրիկյան սոցիալիզմը» ևս պարունակում է որոշ դրական գծեր: «Ճնշված ազգի յուրաքանչյուր բուրժուական նացիոնալիզմի մեջ,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը,— կա համադեմոկրատական բովանդակություն ընդդեմ ճնշման...» (Երկեր, հ. 20, էջ 513):

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

## ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Ա. Գ. ՄԵԼՔԻԿՅԱՆ**
ՀԼԿԵՄ Կենտկոմի կոմերիտական կազմակերպությունների բաժնի վարիչ

*Զարգացած սոցիալիստական հասարակարգի մարդկային հարաբերությունների կատարելագործման, նոր մարդու ձևավորման խնդիրների լուծումը, որոնք առաջադրեց ՍՄԿԿ XXIV համագումարը, թելադրում են հանրային կյանքի բոլոր ոլորտների ներդաշնակ զարգացում: Նշված խնդիրներն ուղեկցվում են տնտեսական և սոցիալական հարաբերություններում կատարվող ինտենսիվ փոփոխություններով, որոնք հրամայաբար պահանջում են գիտականորեն կանխատեսել հասարակական կյանքի մերձավոր ժամանակաշրջանի իրական զարգացման նպատակահարմար համամասնություններն ու թափը:*

*Այժմ պլանաչափ զարգացման ոլորտն անհամեմատ ընդլայնվում է և, արտադրական ու տեխնիկա-տնտեսական պրոցեսներից բացի, ընդգրկում հասարակական կենսագործունեության շատ այլ բնագավառներ: Դա վերաբերում է և սոցիալական հարաբերություններին, որոնք գերակշռում են արտադրական ձեռնարկություններում:*

*Արդի գիտատեխնիկական առաջընթացը որակական խոր փոփոխություններ է հարուցում մարդկանց սոցիալ-տնտեսական հարաբերությունների համակարգում: Հասարակական հարաբերությունների տարբեր կողմերի պրոգրեսիվ վերափոխումն անմիջականորեն կապված է հասարակության տնտեսական ու սոցիալ-քաղաքական հարաբերությունների առավել կատարելագործման հետ: Այս խնդիրը սերտորեն առնչվում է սոցիալական պլանավորման հետ, որի նպատակը սոցիալական պրոցեսների կառավարման հետագա կատարելագործումն է:*

*Ժողովրդական տնտեսության միասնական պլանում արտացոլված տնտեսական և սոցիալական խնդիրների լուծման հաջողությունը մեծապես կախված է ձեռնարկությունների կոլեկտիվների գործունեության արդյունքներից: Ձեռնարկություններում է, որ իրականացվում են հասարակության տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները: Ուստի, ձեռնարկությունն է ժողովրդա-*

կան տնտեսության համակարգի այն օղակը, որտեղ լուծվում են վերջինիս զարգացման հետ առնչվող ամենակարևոր խնդիրները։

Այս առումով պատահական չէ այն մշտական ուշադրությունը, որ նվիրվում է մեր երկրում արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի ռացիոնալացման, արտադրական, տեխնիկա-տնտեսական և սոցիալական պրոցեսների կատարելագործման պրոբլեմներին։

Վերջին տարիներին առանձնապես մեծ նշանակություն է տրվում ձեռնարկության կոլեկտիվի սոցիալական կենսագործունեության պլանավորման հետ առնչվող խնդիրներին։

1966 թ. առաջին անգամ կազմվեց Լենինգրադի «Սվետլանա» արտադրական միավորման կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանը, որից հետո նույնատիպ պլաններ կազմվեցին բազմաթիվ այլ ձեռնարկություններում։ Ինչպես ցույց տվեց փորձը, դրանք էապես նպաստեցին ձեռնարկությունների արտադրատնտեսական ողջ գործունեության բարելավմանը։

Այսպիսով, կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանը տնտեսական զարգացման պլանի իրականացման, արտադրական կոլեկտիվի անդամների նյութական բարեկեցության ապահովման, նրանց համակողմանի զարգացման կոնկրետ ձև է։ Մարքսիզմի կլասիկները բազմիցս նշել են, որ կոլեկտիվն է անհատին ընձեռում իր ունակությունները բազմակողմանիորեն զարգացնելու բոլոր հնարավորությունները՝ հօգուտ ողջ հասարակության։ Ուստի, կոլեկտիվի սոցիալական պլանավորումը պետք է հանդիսանա ժողովրդատնտեսական պլանավորման բաղկացուցիչ մասը։ Այն պետք է ընդգրկի հասարակության սոցիալ-տնտեսական հարաբերությունների արտացոլող բնորոշ պրոցեսները։

Սոցիալական պլանավորումը մեր երկրում, ըստ էության, իրագործվել է նաև անցյալում։ Վ. Ի. Լենինը ժամանակին նշել է, որ առանձին արտադրական կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանը պետք է ներդաշնակի ողջ հասարակության զարգացման հիմնական պրոցեսին և հաշվի առնի տվյալ կոլեկտիվի առանձնահատկությունները։

Հասարակության առաջընթացն իրագործվում է նրա կոլեկտիվների յուրաքանչյուր օղակի զարգացմամբ։ Այժմ հնարավոր է սոցիալական զարգացման պլանները կազմել առանձին արտադրական կոլեկտիվների, այդ թվում որոշ կատեգորիայի աշխատողների համար։ Այստեղ ուրույն տեղ ունի երիտասարդությունն իր սոցիալական խնդիրներով հանդերձ։ Ձեռնարկության կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանները պետք է լինեն համապետական սոցիալական պլանավորման տրամաբանական շարունակությունը և զարգացումը։ Դրանք պետք է արտացոլեն արդյունաբերական ձեռնարկությունների սոցիալական զարգացման առանձնահատկությունները, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հիմնական պրոցեսները, կոլեկտիվներում սոցիալական փոփոխությունների դրսևորման ձևերը, եղանակները և այլն։ Սրանով, անշուշտ, չենք հավակնում որոշելու սոցիալական պլանների սահմանները։ Ի դեպ, հարկ է նշել, որ կոլեկտիվի ու ձեռնարկության սոցիալական զարգացման պլանավորման հստակ սահմանումներ չկան նաև այսօրվա գրականության մեջ, եղածներն էլ հաճախ հակասական են։ Այսպես, Լվովի հեռուստացույցների գործարանի կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանի հեղինակները գտնում են, որ կոլեկտիվի սոցիալական զարգացման գլխավոր խնդիրն այնպիսի միջոցառումների կոմպլեքսի մշակումն ու իրագործումն է, որն



ապահովի կառավարման և կատարման նորմալ ընթացքը, որակյալ ու անորակ աշխատանքի սոցիալ-տնտեսական տարբերությունների մշտական նվազումը, զգալիորեն բարեփոխի աշխատանքի բնույթը, բարելավի գործարանի աշխատողների բնակարանային-կենցաղային պայմանները և նյութական բարեկեցությունը, բարձրացնի աշխատողների գաղափարական, հանրակրթական, տեխնիկական և կուլտուրական մակարդակը։ Այդ միջոցառումների հիմնական նպատակն է՝ գործարանը դարձնել օրինակելի ձեռնարկություն և անհրաժեշտ պայմաններ ստեղծել աստիճանաբար այն վերածելու կոմունիստական տիպի ձեռնարկության։

Այլ հեղինակների կարծիքով սոցիալական պլանավորման նպատակը կոլեկտիվի բոլոր անդամների աշխատանքի, հանգստի, կրթության, հասարակական ակտիվ գործունեության համար առավել բարենպաստ պայմանների ստեղծումն է։

Կարելի է նշել նաև այլ ներհակ բնորոշումներ, սոցիալական պլանավորման խնդիրների իրարամերժ սահմանումներ։ Սակայն չնայած դրանց տարբերություններին, այնուհանդերձ, ստույգ է, որ կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանների առանցքը մարդն է, նրա համակողմանի զարգացումն ապահովող խնդիրների լուծումը։ Բայց ոչ միայն այդքանը։ Սոցիալիստական հասարակարգում անհատի համակողմանի զարգացումն ինքնանպատակ չէ։ Քանի որ այն վերաբերում է կոլեկտիվի յուրաքանչյուր անդամին, այդքանով էլ նրա վերջնական նպատակն աշխատանքային կոլեկտիվին վերաբերող խնդիրների մշակումն է, մարդկային խմբերի և, ի վերջո, ողջ հասարակության սոցիալական հարցերի լուծումը։ Այստեղից ակնբախ է, որ սոցիալական պլանավորումը միջոց է՝ անհատի զարգացմամբ ու կատարելագործմամբ հասնելու հասարակության առջև ծառացած ընդհանուր սոցիալական խնդիրների լուծմանը։

Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանի կոնկրետ նպատակների վերաբերյալ գոյություն ունեցող կարծիքները ևս տարբեր են։ Ոմանք գտնում են, որ դրանց մոտակա նպատակն է ապահովել անհատի համակողմանի զարգացումը, մյուսները՝ արտադրության արդյունավետության բարձրացումը և այլն։ Երբեմն սոցիալական պլանավորման նպատակներն ու խնդիրները ներկայացվում են որպես միջոցառումների կոմպլեքս, երբեմն որպես սոցիալական զարգացման խնդիրների թվարկում։ Բազմազան են նաև պլանների ձևերը, դրանց կառուցվածքը, մշակման մեթոդները։ Դրանցից մի քանիսն ընդհանուր հանձնարարականների բնույթ են կրում, մյուսներն ավելի մանրամասն են շարադրում սոցիալական զարգացման պլանում նշված պրոբլեմները և այլն։ Առավել ճիշտ կլինի սոցիալական պլանների նկատմամբ ցուցաբերել կոմպլեքսային մոտեցում այն հաշվով, որպեսզի նրանցում արտացոլվեն ինչպես վերը նշված, այնպես էլ կոլեկտիվի սոցիալական զարգացման հետ առնչվող այլ խնդիրներ։ Այդ պահանջն ապահովելու նպատակով սոցիալական զարգացման պլանի մեջ անհրաժեշտ է, առաջին հերթին, արտացոլել սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական և կուլտուր-կենցաղային բնույթի առավել կարևոր խնդիրներ, մասնավորապես գիտատեխնիկական առաջընթացի սոցիալական հետևանքները, դրանց ազդեցությունն աշխատանքի բնույթի և բովանդակության, աշխատողների ֆունկցիաների, կոլեկտիվի սոցիալական

կառուցվածքի, նրա անդամների կրթության ու որակավորման, տեխնիկական առաջընթացի ուղղությունների և այլնի վրա։

Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանը պետք է պարունակի նրա սոցիալական բնութագրի փոփոխման նախագիծն արտահայտող ցուցանիշներ, ինչպես նաև այն միջոցառումները, որոնք ապահովում են պլանի առաջադրանքների կատարումը։

Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանն այն միջոցառումների սիստեմն է, որն ուղղված է ողջ արտադրական կոլեկտիվի պրոգրեսիվ վերափոխման նպատակին։ Ինչպես հայտնի է, յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվ բաղկացած է մարդկանց պրոֆեսիոնալ, սոցիալական, տարիքային և այլ որոշակի խմբերից, որոնց շահերը, ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, անհրաժեշտ է հաշվի առնել։ Տարբեր սոցիալական խմբերի մեջ Լ. Ի. Բրեժնևը, առաջին հերթին, նշեց երիտասարդությանը։

Որպես սոցիալական առանձին խումբ երիտասարդությունն ունի ուրույն մի հատկություն. նա ձեռնարկության կոլեկտիվ աշխատուժը հարաճուն մակարդակով ապահովելու անփոխարինելի աղբյուր է։ Այդ տեսակետից կոլեկտիվի սոցիալական զարգացման պլաններում երիտասարդության խնդիրների առանձնացումն ունի կարևոր նշանակություն։ Դա անհրաժեշտ է թեկուզ այն պատճառով, որ շատ ճյուղերում երիտասարդությունը կազմում է արտադրական կոլեկտիվի պատկառելի մասը։ Այսպես, ՍՍՀՄ արդյունաբերական ձեռնարկություններում աշխատողների մեջ երիտասարդությունը կազմում է 54,2, շինարարությունում՝ 10,8, գյուղատնտեսության մեջ՝ 44,1 տոկոս (տե՛ս ВЛКСМ от съезда к съезду. Молодая Гвардия — 1970 г. стр.40)։

Տեխնիկայի, տեխնոլոգիայի արագ փոփոխման պայմաններում բարձր հանրակրթական մակարդակ ունեցող երիտասարդությունը կոլեկտիվի մասնագիտական, որակական և սոցիալական կառուցվածքի կատարելագործման հիմնական ռեզերվն է։ Երիտասարդության քաղաքական, մասնագիտական, նաև ֆիզիկական հատկանիշները, նրա հանրակրթական, ընդհանուր կուլտուրական բարձր մակարդակը և այլ բնորոշ գծերն արտադրական կոլեկտիվների սոցիալական բնութագրերի կատարելագործման տեսանկյունից, բացառիկ կարևոր դեր են վերապահում։ Այս հանգամանքը պահանջում է երիտասարդության առանձնահատուկ գծերի, նրա հիմնական պրոբլեմների, հետաքրքրությունների և պահանջների խոր իմացություն։ Առաջին հերթին լուրջ ուշադրության են արժանի երիտասարդության կոմունիստական աշխարհայացքի, մասնագիտական և բարոյական կերպարի ձևավորման, ընտանիքի ստեղծման, կենցաղային, նյութական ապահովության, հասարակության, կոլեկտիվի կողմից ճանաչելիության հասնելու խնդիրները և այլն։

Երիտասարդությունն իր հերթին տրոհվում է տարիքային, պրոֆեսիոնալ-որակական և այլ խմբերի, որոնցից յուրաքանչյուրն ունի իր առանձնահատկությունները։ ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ կոմերիտմիությունը պետք է կարողանա աշխատել այդպիսի ամեն մի խմբի հետ, քանի որ նույնիսկ նույնատիպ կոլեկտիվում, օրինակ, արտադրական ձեռնարկությունում, կան երիտասարդության տարբեր խմբեր ու կատեգորիաներ (անչափահասներ, միջին ու ավագ տարիքի երիտասարդներ, սոցիալական պատկանելության առումով բանվորներ, ծառայողներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ)։ Բացի դրանից նրանք տարբերվում են նաև որակավորման մակարդակով, հանրակըր-



թական և պրոֆեսիոնալ պատրաստականությամբ, աշխատանքի փորձով ու հմտությամբ, որոնք հուշում են երիտասարդության տարբեր խմբերի նկատմամբ տարբեր վերաբերմունք դրսևորել։

Երիտասարդության վերը նշված խմբերի առանձնահատկությունները նրա աշխատանքի, դաստիարակության, կենցաղի պրոբլեմները պետք է հաշվի առնել նաև արտադրական կոլեկտիվի շրջանակում կատարվող սոցիալական պլանավորման ժամանակ։ Երիտասարդի անձի ձևավորման պրոցեսը կապված է միջավայրի ազդեցության հետ, երիտասարդության սոցիալական զարգացման պլանավորումը պահանջում է նրա դաստիարակության հատուկ խնդիրների լուծում։ Երիտասարդության պրոբլեմների լուծման նպատակին ուղղված սոցիալական զարգացման ծրագիրն իր մեջ պարունակում է մի շարք կարևոր պրոբլեմներ, որոնցից, մեր կարծիքով, լուրջ ուշադրության են արժանի հետևյալ հարցերը.

ա) կոլեկտիվի սոցիալական կառուցվածքի պրոգրեսիվ փոփոխությունը աշխատանքի բովանդակության փոփոխությամբ և աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմամբ.

բ) աշխատանքային պայմանների բարելավումը.

գ) երիտասարդության կոմունիստական գիտակցականության և սոցիալական ակտիվության բարձրացումը.

դ) նյութական, կենցաղային և հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։

Այս հարցերից յուրաքանչյուրը պետք է իրենց արտացոլումը գտնեն կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանում։

Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանում, արտադրության կառավարման առնչությամբ, խոշոր դեր են կատարում հասարակական հիմունքները, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի ստեղծագործական ակտիվության բարձրացման այդ ներգործուն գրավականը։

Կոմերիտմիության կոմիտեները, արտադրամասային բյուրոները սկսել են պատանիներին ու աղջիկներին ավելի մոտիկից ներգրավել մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների, գյուտարարական և նորարարական խորհուրդների աշխատանքներում։

Հաշվի առնելով, որ սոցիալական զարգացման պլանը գիտականորեն հիմնավորված միջոցառումների այնպիսի կոմպլեքս է, որը բացահայտում է ո՛չ միայն երիտասարդության գործունեության առկա վիճակը, այլև դրա կատարելագործման ուղիները, կոմերիտմիության կոմիտեները, ելնելով պլանից, հնարավորություն են ստանում լուրջ և հստակ խնդիրներ դնելու սկըզբնական կազմակերպությունների, բոլոր կոմերիտականների ու երիտասարդների առջև։

Քանի որ արտադրական կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանում այս կամ այն չափով հաշվի է առնվում երիտասարդության՝ որպես սոցիալական խմբի յուրահատկությունները, ձեռնարկության կոմերիտական կազմակերպությունը պետք է ակտիվ մասնակցի սոցիալական զարգացման պլանի մշակմանը։

Այդ աշխատանքներին մասնակցող ԼԿԵՄ կոմիտեների և ակտիվիստների խնդիրները հիմնականում պետք է հանգեն հետևյալին.

ա) անհրաժեշտ ելակետային (նախնական) ինֆորմացիա ստանալու հա-

մար մշակել այնպիսի ցուցանիշներ ու կոնկրետ հարցեր, որոնք հնարավորություն տան սոցիալական զարգացման պլանում նշելու երիտասարդական պրոբլեմների լուծման միջոցառումները.

բ) կոլեկտիվի կյանքում «զուտ» կոմերիտական-երիտասարդական ոլորտներում կատարել անհրաժեշտ դիտումներ ու հետազոտություններ (ուսումնասիրել կոմերիտական քաղլուսավորության գործող սիստեմը, ժողովների պրակտիկան, «կոմերիտական լուսարձակների», «երիտասարդության տեխնիկական ստեղծագործության» ջոկատների աշխատանքը և այլն).

գ) կոմերիտականների ու երիտասարդների լայն զանգվածներին մասնակից դարձնել սոցիալական զարգացման պլանի մշակման աշխատանքներին.

դ) ձեռնարկության մյուս հասարակական կազմակերպությունների հետ համատեղ, երիտասարդական կազմակերպությանը առավել հետաքրքրող տեսանկյունից վերլուծել ստացված ամբողջ նախնական (ելակետային) ինֆորմացիան և սոցիալական զարգացման պլանի համար մշակել միջոցառումներ՝ ուղղված երիտասարդական պրոբլեմների լուծմանը: Այդ միջոցառումների մի մասը կարող է լրիվ կենսագործվել միայն կոմերիտական կազմակերպության ուժերով: Մյուս մասը՝ հասարակական այլ կազմակերպությունների ջանքերով, երրորդ մասը՝ միայն ադմինիստրացիայի և տեխնիկական ծառայության ուժերով: Այս դեպքում կոմերիտական կազմակերպության խնդիրն է՝ նրանց տալ այնպիսի մի յուրատեսակ «սոցիալական պատվեր», որն իր մեջ պարունակի երիտասարդության հետ առնչվող հետևյալ խնդիրները.

— երիտասարդության աշխատանքի պայմանների և աշխատանքի կազմակերպման բարելավումը.

— երիտասարդության պրոֆեսիոնալ-որակական կազմի առաջադիմական փոփոխությունների ապահովումը.

— երիտասարդության հանրակրթական մակարդակի առավել բարձրացման անհրաժեշտությունը.

— երիտասարդության կուլտուրական մակարդակի բնույթը և այն կատարելագործելու միջոցները.

— կոլեկտիվում տիրող փոխհարաբերությունների բնույթը.

— նյութական և բնակարանային-կենցաղային նորմալ պայմանների ստեղծումը.

— ֆիզիկական զարգացումը և առողջության պահպանումը.

— ազատ ժամանակի բյուջեն և դրա օգտագործման բարելավումը:

Նշված պրոբլեմների վերաբերյալ հավաստի ինֆորմացիայի աղբյուրը նույնն է, ինչ տարիքային մյուս խմբերինը: Դրանք են՝ վիճակագրական տվյալները, ադմինիստրացիայի, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և մյուս կազմակերպությունների փաստաթղթերը, դիտարկումները, սոցիոլոգիական հետազոտությունները, էքսպերտային գնահատականները և այլն: Ստացված ինֆորմացիայի վերլուծության հիմնական նպատակը արտադրական ողջ կոլեկտիվի և նրա ստորաբաժանումների երիտասարդության բնութագրի բացահայտումն է:

Կոմերիտմիության կոմիտեները ձեռնարկության ադմինիստրացիայի և նրա բաժինների հետ համատեղ պետք է կարողանան խորապես վերլուծել երիտասարդության կրթական մակարդակի և տարիքային ստորաբաժանման տվյալները՝ կապված կոլեկտիվի կառուցվածքի կատարելագործման հետ, ուսումնասիրեն նրա սոցիալ-կուլտուրական վիճակն ու պահանջմունքները: Անհրաժեշտ է, որ կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանները լայն քննարկվեն երիտասարդության կոլեկտիվներում, բրիգադներում:



Կոլեկտիվի սոցիալական զարգացման կոմպլեքսային պլաններում անհրաժեշտ միջոցառումներն ապահովելու նպատակով կոմերիտական կազմակերպությունները պետք է ուշադրություն դարձնեն հետևյալ հարցերին.

— արտադրության զարգացմանը և կատարելագործմանը, աշխատանքի պայմանների բարելավմանը.

— կադրերի պատրաստմանը, երիտասարդության պրոֆեսիոնալ, կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը: Տնտեսագիտական ընդհանուր ուսուցմանը.

— արտադրության կառավարմանը երիտասարդության մասնակցությանը.

— երիտասարդության հոսունության կրճատմանը.

— տեխնիկական առաջընթացին երիտասարդության մասնակցությանը.

— սոցիալիստական մրցությանը երիտասարդության մասնակցությանը.

— աշխատանքի արտադրողականության բարձրացմանը.

— գաղափարական, կուլտուր-դաստիարակչական աշխատանքներին:

Հարցերի նման շրջանակներով անցկացված կոմպլեքսային հետազոտությունների արդյունքների հիման վրա միայն հնարավոր կլինի կանխատեսել երիտասարդության պրոֆեսիոնալ-որակական, սոցիալական կազմի բարոյական ու քաղաքական կերպարի, տնտեսական վիճակի հետ առնչվող կոնկրետ փոփոխությունների ուրվագիծը, որոնք իրենց արտացոլումը պետք է գտնեն սոցիալական զարգացման ամփոփ պլանում:

ՀԱՆՁՆԱՐԱՐՎՈՂ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ

В. И. Ленин, ПСС, т. 36, стр. 152.

Материалы XVI съезда ВЛКСМ, М., 1970.

ВЛКСМ от съезда к съезду. М., 1970.

**А. А. Аракелян** — Принципы управления промышленностью СССР, М., «Знание». 1966.

**А. М. Бирман** — Почему рабочему нужно знать экономику своего предприятия, **М,, Политиздат, 1961.**

Основные направления перспективного комплексного плана социального развития коллектива объединения «Светлана» на 1966—1970 гг. 1968, Ленинград.

Рекомендации по дальнейшему развитию движения «Ни одного отстающего рядом», в комсомольских организациях Горьковской области. 1973, Горький.

Լ. Զ. Անանյան— *Սոցիալիստական մրցությունը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը, «Հայաստան» հրատ., 1973:*

Ա. Ա. Հովսեփյան— *Գիտության թելադրանքով, «Լենինյան ուղիով», 1973, № 2:*

# ՄԱՐՏՆՉՈՂ ՄԱՏԵՐԻԱԼԻՍՏԻ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ԹԵՈՐԻԱՆ

Ռ. Ա. ԱՎԱԳՅԱՆ

Փիլիսոփայությունը, գրել է Մարքսը, չի ապրում աշխարհից դուրս, իսկ փիլիսոփաները հողից չեն բուսնում, ինչպես սունկերը։ Յուրաքանչյուր մտածող իր դարաշրջանի արդյունք է։ Իր ապրած դարաշրջանի արդյունք էր նաև Լյուդվիգ Ֆոյերբախը, որի գործերը, Մարքսի գնահատմամբ, «Հեգելի «Ֆենոմենոլոգիայից» ու «Տրամաբանությունից» հետո բովանդակում են իսկական տեսական հեղափոխություն» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1956, стр. 520)։

Լյուդվիգ Ֆոյերբախը XIX դարի գերմանական դասական բուրժուական փիլիսոփայության վերջին ներկայացուցիչն էր։ Ֆոյերբախի մատերիալիզմն իրենից ներկայացնում է ողջ դասական կամ ավանդական փիլիսոփայության վերջը ոչ միայն այն իմաստով, որ նրա ուսմունքի մեջ «հին փիլիսոփայությունը» սպառել է զարգացման իր հնարավորությունները, այլև, ավելի էական իմաստով, որ այն իրենից ներկայացնում է նախորդ փիլիսոփայության սահմաններից դուրս գալու փորձ։ Այն իր մեջ պարունակում է ո՛չ միայն «լուրջ» քննադատական վերաբերմունք հեգելյան դիալեկտիկայի նկատմամբ», այլև «իսկական հայտնագործություններ այդ բնագավառում»։ Ֆոյերբախը, Մարքսի արտահայտությամբ, «ինչպես հարկն է հաղթահարեց հին փիլիսոփայությունը» (նույն տեղը, էջ 622)։ Մարքսը նրա «հայտնագործություններից» ամենակարևորը համարում է այն, որ Ֆոյերբախը ցույց է տալիս հասարակական մի շարք պրոբլեմների լուծման անհնարինությունը «իրերի գոյավիճակի վերացական արտահայտությունը» հանդիսացող փիլիսոփայության շրջանակներում, և «հանգում այն եզրակացության, որ փիլիսոփայությունը պետք է սպեկուլյացիայի երկնքից իջնի մարդկային կարիքի խորքերը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Սուրբ ընտանիք, Ե., 1967, էջ 62)։

Փիլիսոփայությունը, Ֆոյերբախի կարծիքով, պետք է գոյություն ունեցողի վերացական արտահայտությունից վերածվի մարդկանց կյանքի պայմանների փոփոխության միջոցի։ Չնայած այդ հարցը նա արծարծում է վերացականորեն, բայց Մարքսի և Էնգելսի համար դա նոր մատերիալիզմ մշակելու ելակետ հանդիսացավ, աշխարհը կոմունիստորեն վերափոխելու հոգևոր զենք դարձավ։

Ֆոյերբախի մատերիալիզմի առանցքը անտրոպոլոգիզմն է՝ (մարդաբանականությունը), մարդու՝ որպես բնության բարձրագույն արդյունքի, նրա բնության հետ ունեցած անխզելի միասնության մեջ վերառնումը։ Ինչպես ճիշտ նկատում է Գ. Վ. Պլեխանովը՝ ի դեմս Ֆոյերբախի մարդաբանական մատերիալիզմի «...մենք գործ ունենք մեթոդոլոգիական եղանակի հետ, որի նշանակությունը պայմանավորվում է տեղի և ժամանակի հանգամանքներով... բայց ոչ երբեք աշխարհայեցողության որևէ առանձնահատկությամբ» (Գ. Վ. Պլեխանով, Փիլիսոփայական ընտիր երկեր, հինգ հատ., հ. 3, Ե., 1964, էջ 138—139)։ Ֆոյերբախի մարդաբանական մատերիալիզմը մատերիալիզմի հատուկ տարատեսակ է։ Հենց շնորհիվ իր առանձնահատկության այդ մատերիալիզմն անցումային օղակ հանդիսացավ ո՛չ միայն Հեգելի իդեալիզմից դեպի Մարքսի մատերիալիզմը, այլև ողջ նախորդ փիլիսոփայությունից դեպի նոր փիլիսոփայություն։ Ֆոյերբախի մատերիալիզմի հետ միասին գերմանական կլասիկ իդեալիստական փիլիսոփայությունը մարքսիզմի ձևավորման տեսական աղբյուրներից մեկը դարձավ։ Ֆոյերբախը նշանակալից դեր է խաղացել մատերիալիստական իմացության զարգացման գործում, Իմացության նրա տեսությունն իր բնույթով մատերիալիստական է, որը պայմանավորվում է փիլիսոփայության հիմնական հարցի մատերիալիստական լուծմամբ։ Մատերիալիստական իմացություն ստեղծելու համար Ֆոյերբախը հարկադրված էր վճռական պայքար մղելու իդեալիստական փիլիսոփայության, հատկապես նրա այնպիսի ներկայացուցիչների դեմ, ինչպիսիք էին Կանտը, Ֆիխտեն, Շելլինգը, Հեգելը և ուրիշներ։ Իդեալիզմի և ագնոստիցիզմի դեմ նրա արծարծած փաստարկներից շատերը հետագայում օգտագործվեցին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների կողմից։ Փիլիսոփայության պատմության մեջ Սպինոզայից հետո, Ֆոյերբախը միակն էր, որն առաջադրեց օբյեկտի ու սուբյեկտի մատերիալիստական միասնության հարցը։ Եվ դա ֆոյերբախյան մատերիալիզմի կարևոր ծառայություններից մեկն է։ Օբյեկտի ու սուբյեկտի հարցի ֆոյերբախյան լուծումն անխզելիորեն կապված է նրա անտրոպոլոգիական ուսմունքի հետ։ Նրա ըմբռնմամբ օբյեկտի և սուբյեկտի միասնությունը իմաստ ունի լոկ այն դեպքում, երբ այդ միասնության համար իբրև հիմք, սուբյեկտ վերառնվում է մարդը։

Ֆոյերբախը հաստատում է նաև, որ օբյեկտն ու սուբյեկտը բացարձակ տարբեր չեն, նրանք միասնական են և միևնույն ժամանակ տարբեր։ Նրա հայեցակետով դա էլ բնութագրում է նրանց փոխհարաբերությունը։ Քննադատելով սուբյեկտի և օբյեկտի հարցի իդեալիստական ըմբռնումները, նա շեշտում է, թե բոլոր իդեալիստները նմանվում են միմյանց, որովհետև նրանց համար ճանաչողության սուբյեկտը ո՛չ թե ռեալ գոյություն ունեցող մարդն է, այլ մերկ, նյութական բովանդակությունից զուրկ վերացարկումը։ Նոր ժամանակի իդեալիստական փիլիսոփայության նշանակությունը Ֆոյերբախը տեսնում էր նրանում, որ այն վերացական, վերաշխարհային սատծո տեղը դրեց մարդկային բանականությունը, մտածողությունը, և նրան մոտեցրեց մարդկային «Ես»-ի ըմբռնմանը, վերացրեց աստվածային էակը և աստվածացրեց բանականությունը։ Սակայն նա չբացահայտեց մարդու՝ որպես մտածողության սուբյեկտի առանձնահատկությունները, նրա հասարակական բնույթը։ Մարքսն ու Էնգելսը սուբյեկտի տակ նկատի ունեն մարդուն ոչ միայն նրա մարմնի, արյան և ուղեղի, այլև արտադրության բոլոր գործիքների հետ, հասարակական հարաբերություններով, որտեղ մարդիկ հարաբերության մեջ են գտնվում միմյանց հետ։ Հետևապես, իբրև իմացության և պրակտիկ գործունեության իսկական սուբյեկտ հանդես է գալիս ոչ թե մարդը որպես անհատ, այլ հասարակությունն իր զարգացման այս կամ այն աստիճանում։

Իրականում Ֆոյերբախը սահմանափակվեց միայն օբյեկտի ներգործությունն ընդունելով, անտեսելով սուբյեկտի ներգործության փաստը օբյեկտի վրա։ Մինչմարքսյան բոլոր մատերիալիստների նման նա հասարակական երևույթների և մարդկային էության ըմբռնման հարցում մնաց իդեալիստ։

Այդ սահմանափակությունը դրսևորվում է ո՛չ միայն մարդու՝ մյուսների հետ ունեցած հարաբերության, այլև մարդու և բնության հարաբերության ոլորտում։ Ֆոյերբախին անմատչելի մնաց այն, որ մարդու վերաբերմունքը բնության նկատմամբ, ինչպես և նրա հասարակական հարաբերությունը, ունեն իրենց զարգացման պատմությունը։ Մինչ նա օբյեկտն ու սուբյեկտը, մարդն ու բնությունը վերառնում է զարգացումից դուրս։ Նա չնկատեց, որ ճանաչող սուբյեկտը ո՛չ միայն բնության զարգացման, այլև հասարակական-պատմական պրոցեսի արգասիք է։ Մարդն ու բնությունը, օբյեկտն ու սուբյեկտը դիտել այդ զարգացումից դուրս, նշանակում է ոչինչ չասել ոչ իսկական սուբյեկտի, ոչ էլ իսկական միասնության մասին, որովհետև մարդը, իբրև սուբյեկտ, ներգործում է բնության վրա, որը նրա համար ճանաչվող օբյեկտ է, և փոփոխելով այն, փոխվում է ինքը։

Այսուհանդերձ, օբյեկտի և սուբյեկտի մատերիալիստական միասնության ֆոյերբախյան ըմբռնումը հսկայական դեր է խաղացել իդեալիստական փիլիսոփայության դեմ մղվող պայքարում, այդ առումով էլ բարձր է գնահատվել մարքսիզմի կլասիկների կողմից։

Օբյեկտի ու սուբյեկտի մատերիալիստական միասնության ֆոյերբախյան ուսմունքը սերտորեն կապված է աշխարհի ճանաչելիության հարցի հետ։ Ի հակադրություն ագնոստիցիզմի, որը ժխտում է աշխարհի և նրա օրինաչափությունների ճանաչման հնարավորությունը, կասկածում մեր գիտելիքների հավաստիությանը, չի ընդունում օբյեկտիվ ճշմարտությունը, Ֆոյերբախը բազմիցս ընդգծում է, որ մարդը կարող է ճանաչել աշխարհն ու նրա օրինաչափությունները։

Խորապես համոզված լինելով աշխարհի ճանաչելիության, մարդկային ունակության անսահմանափակ հնարավորության նկատմամբ, Ֆոյերբախն առարկում է այն փիլիսոփաներին, որոնք, ելնելով առանձին անհատի ճանաչողական ունակության սահմանափակության փաստից, պնդում են, թե մարդկային ունակությունները սահմանափակ են ընդհանրապես։ «Մեկ մարդու գիտելիքը սահմանափակ է, սակայն սահմանափակ չէ բանականությունը, սահմանափակ չէ գիտությունը, որքանով նա մարդկության ընդհանուր գործողություն է...» (Լ. Ֆոյերբախ, Քրիստոնեության էությունը, Ե., 1968, էջ 145)։

Ֆոյերբախը, իհարկե, չի ժխտում, որ առանձին անհատն ի վիճակի չէ ճանաչելու ամեն ինչ, որ նրա գիտելիքը միշտ մնում է սահմանափակ։ Բայց այդ փաստից Ֆոյերբախն այն եզրակացության չեկավ, թե դա վերաբերում է առհասարակ ողջ մարդկությանը։ Ընդհակառակը, ասում է նա, «...այն, ինչ չգիտե և չի կարող գիտենալ մեկ առանձին մարդ, այն գիտեն և կա-

րող են գիտենալ մարդիկ ամբողջությամբ վերցրած» (Л. Фейербах, Избр. философ. произв., т. 1, 1956, стр. 148—149)։ Ելնելով մատերիալիստական այս սկզբունքից, նա քննադատում է Հեգելի այն պնդումը, ըստ որի մարդկությունն իր փիլիսոփայությամբ հասնում է բացարձակ ճշմարտության և հարց է տալիս. «Հնարավո՞ր է արդյոք ընդհանրապես, որպեսզի սեռը բացարձակապես իրականացվի մեկ անհատի մեջ, արվեստը մեկ արվեստագետի մեջ, փիլիսոփայությունը մեկ փիլիսոփայի մեջ...»։ Ու բացասաբար է պատասխանում այդ հարցին։ Իսկ եթե ընդունենք հեգելյան մտքի հնարավորությունը, ասում է նա, ապա դրանով իսկ վերջ կդրվեր մարդկային իմացությանը, իրականության բոլոր օրենքներին և սկզբունքներին, դա «փաստորեն կլիներ աշխարհի կործանումը» (նույն տեղը, էջ 57)։

Եվ Ֆոյերբախը Գյոթեի խոսքերով ասում է. «Միայն հանուր մարդկությունն է ճանաչում բնությունը, միայն հանուր մարդկանց մեջ է ապրում մարդկությունը»։

Ագնոստիցիզմի իր քննադատության մեջ Ֆոյերբախը հատկապես անդրադառնում է Կանտի ուսմունքին, որովհետև վերջինս մարդկային բանականությունը դրեց որոշակի սահմանների մեջ և գտնում էր, որ այն ունակ չէ ճանաչելու իրականությունը։ Մարդկային ճանաչողության համար, ասում է Ֆոյերբախը, գոյություն չունեն անհաղթահարելի սահմաններ։ Մարդկային ճանաչողությունն իր շարժման մեջ ունակ է մեր առջև բացելու բնության ամենախոր գաղտնիքները։ Մարդկության պատմությունն իրենից ներկայացնում է ճանաչողության պատմականորեն որոշակի սահմանների մշտական հաղթահարում։

Ֆոյերբախի կարծիքով, բնության ճանաչման պրոցեսում բանականությունը երբեք չի կարող սահմաններ ունենալ, և դրա համար էլ բնության մեջ չեն կարող լինել «ինքնին իրեր» կանտյան իմաստով։ Կանտյան «ինքնին իրը» Ֆոյերբախը համարում է «վերացարկում առանց ռեալության», մտածական, և ոչ թե իրական իր։ Ոչ միայն Կանտի, այլև ամբողջ «սպեկուլյատիվ փիլիսոփայության» համար, նկատում է Ֆոյերբախը, բնությունը «ինքնին իր է, այսինքն՝ վերացարկում առանց ռեալության, մինչդեռ հենց բնությունն է փլուզում իդեալիզմը»(L. Feuerbach, Samtliche Wevke, B. VII, էջ 510);

Ֆոյերբախն իր քննադատության սուր ծայրն ուղղում է «ինքնին իրի»՝ որպես մտային իրի, կանտյան ըմբռնման դեմ։ Իրականում «վճռականորեն ոչ մի սկզբունքային տարբերություն չկա՛ և չի՛ կարող լինել երևույթի և «ինքնին իրի» միջև։ Տարբերություն կա պարզապես իմացված բանի և դեռևս չիմացված բանի միջև...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 123)։

Ֆոյերբախը չի ընդունում առարկաների առաջնային և երկրորդային հատկանիշների բաժանման միտքը, որը Դեմոկրիտի, Դեկարտի, Լոկի փիլիսոփայության մեջ այնքան մեծ տեղ է գրավում։ Նա գիտակցում էր, որ «երկրորդային» հատկանիշների օբյեկտիվ գոյության ժխտումը և մարդու սուբյեկտիվ վիճակից նրանց կախման ըմբռնումը կարող է հանգեցնել սուբյեկտիվ իդեալիզմին։ Ֆոյերբախը հասկանում էր, որ այդպիսի բաժանումը կարող է հանգեցնել աշխարհի անճանաչելիության մտքին, այսինքն՝ ագնոստիցիզմին։

Ֆոյերբախի իմացության թեորիայի մեջ կարևոր տեղ է գրավում զգայության և մտածողության փոխհարաբերության հարցը։ Նա հետազոտում է իմացության բովանդակությունը, մեր գիտելիքների ծագման աղբյուրն ու օբյեկտը և այդ հիման վրա լուսաբանում զգայության և մտածողության միասնության մատերիալիստական փոխհարաբերությունը։

Շարունակելով Բեկոնի և ֆրանսիական մատերիալիստների գիծը, Ֆոյերբախը իմացության առաջին աստիճան է համարում զգայությունը, զգայության օբյեկտ՝ արտաքին աշխարհը։ Զգայությունները ո՛չ միայն մեր ճանաչողության աղբյուրն են, այլ նաև մեր կյանքի աղբյուրը։ Զգայություններն արտահայտում են մարդու և արտաքին աշխարհի կապը։ Մարդն իր գոյությամբ պարտական է «ոչ թե բանականությանը, ոչ թե ոգուն, այլ միայն զգայական բնությանը»։ Ամենօրյա պրակտիկան հաստատում է այն փաստը, որ զգայական ընկալումները սուբյեկտը կապակցում են օբյեկտի հետ։ «Եթե չլիներ մատերիան, բանականության համար չէր լինի ոչ դրդապատճառ, մտածողության համար նյութ, հետևապես չէր լինի և բովանդակություն» (Л. Фейербах. Избр. философ. произв., т. 1, стр. 157)։

Հակադրվելով սուբյեկտիվ իդեալիստներին, որոնց կարծիքով, աշխարհը գոյություն ունի միայն ընկալման և զգայության մեջ, Ֆոյերբախը հարցնում է, թե այդ դեպքում «...ինչո՞ւ կատուն իր ճանկերը մխրճում է մկան մարմնի մեջ, այլ ոչ թե իր սեփական աչքերի մեջ, եթե մուկը. որին նա տեսնում է, գոյություն ունի միայն նրա աչքերում. եթե այն նրա տեսողական ներվերի աֆեկցիան է» (նույն տեղը, էջ 568)։ Այդ այն պատճառով, սրամտորեն նկատում է Ֆոյերբախը, որ կատուն չի ուզում ի սեր իդեալիստների սովից մեռնել։

Ֆոյերբախի ուսմունքից պարզ երևում է, որ զգայությունը որպես հոգեկան պրոցես սուբյեկտիվ է, «...բայց նրա հիմքը կամ պատճառը (Grund) օբյեկտիվ է» (նույն տեղ, էջ 572)։

Սուբյեկտիվ իդեալիզմի ֆոյերբախյան քննադատությունը բարձր է գնահատվել մարքսիզմի կլասիկների կողմից։ Իդեալիզմի դեմ մղած պայքարում Վ. Ի. Լենինը հաճախ է վկայակոչել Ֆոյերբախին։

Համաձայն Ֆոյերբախի ուսմունքի, զգայությունները ո՛չ միայն նույնական չեն արտացոլվող առարկայի օբյեկտիվ հատկանիշների հետ, այլև առարկայի հատկանիշները չեն արտահայտում այնպես, ինչպես դրանք հատուկ են առարկաներին անկախ զգայություններից։ Զգայությունն առարկայի օբյեկտիվ պատկերի սուբյեկտիվ արտահայտությունն է, բայց առարկայի այդ օբյեկտիվ պատկերը սուբյեկտիվ է դառնում այնքանով, որքանով նա օբյեկտից «տեղափոխվում է» սուբյեկտի գիտակցության մեջ, ձեռք բերում որոշ սուբյեկտիվ տարրեր։ Մյուս կողմից նա իր մեջ պարունակում է ինչ-որ բան, որ սուբյեկտի արդյունք չէ, այլ դուրս է հանված առարկաներից և կազմում է զգայությունների բովանդակությունը։ Այսպիսով, համաձայն Ֆոյերբախի, զգայությունները մեր ճանաչողության աղբյուրներն են։ Բայց նա չի սահմանափակվում դրանով, ինչպես այդ անում են «անհոգի էմպիրիկներն ու մատերիալիստները»։ Ֆոյերբախը գտնում է, որ միայն զգայությունների միջոցով, առանց մտածողության օգնության, մարդը օբյեկտիվ աշխարհի մասին չի կարող ստանալ հավաստի գիտելիքներ, որ ճանաչողության պրոցեսում զգայություններն անխզելիորեն կապված են մտածողության հետ։ «Ես ժխտում եմ ոչ թե մտածողությունը, որովհետև մտածողությունը ինձ համար զգայական ճշմարտություն է,— գրում է Ֆոյերբախը,— ես ժխտում եմ այն մտածողությունը, որը համարվում է ոգի, հոգի, էություն, սուբստանցիա, սուբյեկտ»(L. Feuerbach, Samtliche wevke. B. X, էջ 207)։

Ֆոյերբախը պարզորոշ գիտակցում էր մտածողության և զգայության փոխհարաբերության հարցի ողջ բարդությունը, նրա լուծման դժվարությունը. «մատերիալիզմի և իդեալիզմի միջև եղած վեճը, կամ հակադրությունը,— ասում է նա,— վեճ չէ մատերիայի և ոգու, մարմնի և հոգու միջև, դա վեճ է զգայության և մտածողության միջև, քանի որ զգայությունը ծայրեիծայր մատերիալիստական է, մարմնական, ինչպես պնդում էին դեռևս անտիկ մտածողները։ Բանը միայն այն է, որ բացատրվի մտածողության և զգայության միջև եղած փոխհարաբերությունը» (նույն տեղը, էջ 303)։

Մտածողությունը, ասում է Ֆոյերբախը, ելնելով զգայությունների տվյալներից, չի կտրվում նրանցից այլ ընդհանրացնում է դրանք։

Սակայն դա չպետք է այն իմաստով հասկանալ, թե Ֆոյերբախի կարծիքով, մտածողությունը մեզ տալիս է միայն համընդհանուրը, իսկ զգայությունը միայն եզակին։ «...Զգայության մեջ ես եզակի եմ,— ասում է Ֆոյերբախը,— մտածողության մեջ՝ համընդհանուր։ Սակայն զգայության մեջ ես պակաս համընդհանուր չեմ, քան մտածողության մեջ՝ եզակի։ Մտածողության ներդաշնակությունը խարսխվում է միայն զգայության ներդաշնակության վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 492)։

Իրական մտածողությունը կոնկրետից բարձրանում է դեպի վերացականը, անհատականից սեռայինը։ Բայց պետք է նշել, որ անցումը զգայական ընկալումից դեպի վերացականը, Ֆոյերբախը չի դիտում որպես դիալեկտիկական, թռիչքային անցումներ։ Հետազոտելով մտածողության ֆունկցիան, նա շեշտը դնում է գլխավորապես նրա բովանդակության վրա։ Բայց, միևնույն ժամանակ, այստեղ հանդես է գալիս նրա իմացության թեորիայի սահմանափակությունը այն իմաստով, որ նա մտածողության նախադրյալը չհետազոտեց ձևի տեսակետից, չբացահայտեց մտածողության ձևերն ու դրանց փոխհարաբերությունը, չնշեց սուբյեկտիվ գործունեության դերն իմացության պրոցեսում։ Զգայության և մտածողության փոխհարաբերությունը նա, ըստ էության, չի դիտում պատմական զարգացման պրոցեսում, թեև երբեմն ի հայտ է բերում պատմական մոտեցում։ Ֆոյերբախը գտնում է, որ մտածողությունը մտավոր զարգացման բարձր արգասիք է, որ այն իր զարգացման ընթացքում փոխում է իր հարաբերությունը զգայության նկատմամբ, նրան վերաբերվելով քննադատաբար։ Բայց այդ դիալեկտիկական մոմենտները հետևողական զարգացում չեն ստանում ու, այդպիսով, իմացության թեորիան նրա մոտ իր էությամբ մնում է մետաֆիզիկական։

Ճշմարտության և դրա չափանիշի հարցը Ֆոյերբախի իմացության թեորիայի էական սկզբունքներից է։ Խոսելով ճշմարտության վերաբերյալ Ֆոյերբախի հայացքների մասին, ամենից առաջ պետք է ընդգծել, որ նա ևս, ինչպես մյուս մատերիալիստները, չէր կասկածում օբյեկտիվ ճշմարտության գոյությանը։ Նա ընդունում է մարդուց անկախ օբյեկտիվորեն գոյություն ունեցող աշխարհի ճիշտ արտացոլումը մարդու զգայությունների, պատկերացումների ու մտածողության մեջ և համոզված է, որ մարդկային զգայությունների ու պատկերացումների բովանդակությունը օբյեկտիվ գոյություն է։

Ի՞նչն է ճշմարտության չափանիշը։ Գուցե իմացության հի՞մքը, քանի որ ընդունված է, թե այն, ինչ իմացության հիմքն է, միաժամանակ







ճշմարտության չափանիշ է։ Համենայն դեպս մարքսիզմի մեջ դրանք երկու տարբեր բաներ չեն, այլ միևնույն բանը՝ անմիջական նյութական պրակտիկ գործունեությունը։ Ֆոյերբախը մի փոքր այլ կերպ է դնում հարցը. այն, ինչ նրա համար ճանաչողության հիմք է, միաժամանակ ճշմարտության չափանիշ չէ։ Այդպիսի ըմբռնման ակունքները գտնվում են ֆոյերբախյան մատերիալիզմի բնույթի մեջ։ Դա, օգտագործելով Լենինի արտահայտությունը, «օբյեկտիվ սենսուալիզմն է», որի իմացության տեսությունը խարսխվում է բնության մատերիալիստական ըմբռնման և մարդու նատուրալիստական ըմբռնման վրա, և իր հիմքում չունի պրակտիկան։ Ֆոյերբախը իմացաբանական հարաբերությունը քննարկում է ոչ որպես հասարակական հարաբերություն, այլ որպես մեկուսացված անհատի և բնության հարաբերություն։ Նորից հիշենք, որ անհատը, Ֆոյերբախի համար, սեռային, «բացարձակ», «ունիվերսալ» էակ է։ Մարդու, որպես բնական և սեռային էակի, և մարդու, որպես հասարակական էակի ըմբռնումն է, որ պայմանավորում է ճշմարտության չափանիշի ֆոյերբախյան և մարքսիստական ըմբռնման տարբերությունը։ Այն, ինչ չկարողացավ անել Ֆոյերբախը, կատարեց Կ. Մարքսը, որը Ֆոյերբախի մասին իր թեզիսներում սկսեց այնտեղից, որտեղ կանգ էր առել Ֆոյերբախը։ Մարքսը վերցրեց Ֆոյերբախի այն թեզը, որ «մարդը բանականության չափանիշն է» (Л. Фейербах, Избр. философ. произв., т. 1, стр. 198), բայց ավելացրեց՝ մարդը ոչ թե որպես հայեցող, այլ որպես «մարդու աշխարհ», որպես հասարակական պրակտիկ էակ։ Այսպիսով, Ֆոյերբախը չըմբռնեց, որ որպես մարդկային փտելիքների հիմք, արտաքին աշխարհի առարկաների և երևույթների մասին մարդկային պատկերացումների ճշմարտացիության ապացույց, կարող է ծառայել միայն մարդկային հասարակական-արտադրական պրակտիկան։

Անկասկած, մարդաբանությունը ֆոյերբախյան փիլիսոփայության կարևոր նվաճումներից մեկն է, որը մեծ ազդեցություն թողեց գիտական կոմունիզմի հիմնադիրների փիլիսոփայական աշխարհայացքի ձևավորման վրա։ Ֆոյերբախյան մարդաբանությունը զուրկ չէր մատերիալիստական աշխարհըմբռնման տարրերից, և չէր հակադրված դրան։ Ֆոյերբախի մարդաբանությունը պետք է դիտել որպես մատերիալիզմի և հումանիզմի սինթեզման սկզբունք, որպես մատերիալիզմի հումանիստական ավանդույթների հետագա զարգացում։ Այդ սինթեզը չէր կարող իրականացվել մատերիալիստական մեխանիցիզմի շրջանակներում, որին Ֆոյերբախը անվանել է «անհոգի» մատերիալիզմ։ «Ֆոյերբախը հանդիսացավ հումանիզմի հետ համընկնող մատերիալիզմի արտահայտիչը տեսության բնագավառում», ինչպես «ֆրանսիական և անգլիական սոցիալիզմն ու կոմունիզմը հանդիսացան այդ մատերիալիզմի արտահայտիչները պրակտիկայի բնագավառում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Սուրբ ընտանիք, էջ 207)։ Շնորհիվ այն բանի, որ ֆոյերբախյան մարդաբանությունը եղել է մատերիալիզմի և հումանիզմի «տարրերի» սինթեզման սկզբունք, այն կամուրջ հանդիսացավ հեգելյան սպեկուլյատիվ փիլիսոփայությունից դեպի պատմության մատերիալիստական ըմբռնմանն անցնելու համար, քանի որ պատմական մատերիալիզմը ծագել է ոչ թե այդ «տարրերից» որևէ մեկի զարգացմամբ, այլ նշված սինթեզի հետագա խորացման շնորհիվ, հասարակության կյանքի նյութական պայմանների ուսումնասիրության ճանապարհով։

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033 Ереван-33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 03970 Պատվեր 1056 Թղթի չափը 70×108 1/16։ Տիրաժ 14.100 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 6/VI-1974 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ալ. Խաչհակյան փող. № 28։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՄԱՐՔՍ և Ֆ. ԷՆԳԵԼՍ— Երկեր, հատ. 47, Политиздат, 1973։

Մարքսի և Էնգելսի արխիվը, հատ. XIV (ՍՄԿԿ-ին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտ), Политиздат, 1973։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կուսակցական կյանքի նորմաների և կուսակցական ղեկավարման սկզբունքների մասին. «Հայաստան» հրատ., 1974։

Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն սոցիալիստական մրցության մասին. Политиздат, 1973։

Ժողովածուն նախատեսված է ընթերցողների լայն շրջանի— սոցմրցության կազմակերպիչների, կուսակցական ակտիվի, ագիտատորների ու պրոպագանդիստների համար։

Ն. ԺՈՒԿՈՎՍԿԻ— Դիվանագիտական պոստում. Политиздат, 1973։

Վավերագրական նյութերի, հիշողությունների վրա հիմնված այս գրքում նկարագրված է սովետական ականավոր դիվանագետ, պետական ու հասարակական գործիչ, ակադեմիկ Վ. Պ. Պոտյոմկինի մասին. կարևոր տեղ է գրավում 1922—1940 թթ. Թուրքիայում, Հունաստանում, Իտալիայում, Ֆրանսիայում և ՍՍՀՄ արտաքին գործերի ժողովրդական կոմիսարիատում ծավալած նրա գործունեությունը։

Ա. Գ. ԶՎԵՐԵՎ— Մինիստրի գրառումները. Политиздат, 1973։

Ավելի քան 40 տարի Արսենի Գրիգորևիչ Զվերևն աշխատել է մեր երկրի ֆինանսական օրգաններում։ Պետական ականավոր գործիչն անցել է աշխատանքային մեծ ճանապարհ, մանածագործական ֆաբրիկայից մինչև ՍՍՀՄ ֆինանսների մինիստրի պատասխանատու գործը։ Ժամանակակից երիտասարդությունը հետաքրքրությամբ կկարդա այս հիշողությունները։

Մարդը—Գիտությունը— Տեխնիկան (Գիտատեխնիկական հեղափոխության մարքսիստական վերլուծության փորձ), Политиздат, 1973։

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի, փիլիսոփայության ինստիտուտի, բնագիտության և տեխնիկայի պատմության ինստիտուտի, Չեխոսլովակիայի գիտությունների ակադեմիայի, փիլիսոփայության ու սոցիոլոգիայի ինստիտուտի պատրաստած այս ժողովածուն մեծապես կհետաքրքրի դասախոսներին, ուսուցիչներին, ուսանողներին, պրոպագանդիստներին և բոլոր նրանց, ովքեր ուսումնասիրում են փիլիսոփայությունը և զբաղվում գիտատեխնիկական հեղափոխության հարցերով։

Վ. Պ. ԼՈԿՏԵՎ— Տնտեսական հաշվարկ սովորիր. Политиздат, 1973։

Գիրքը կոչված է օգնելու տնտեսական կրթության սիստեմի ունկնդիրներին՝ գնահատելու տնտեսական իրադարձությունները, գործնական հետևություններ անելու ձեռնարկությունների աշխատանքը բարելավելու նպատակով։

Միջազգայնագետ-պրոպագանդիստի տեղեկատու. Политиздат, 1973։

Գրքի առաջին մասը նվիրված է արդիականության ժամանակակից խնդիրներին, երկրորդը՝ ՍՍՀՄ-ի արտաքին առևտրական կապերին, երրորդը՝ պարունակում է նյութեր՝ դասախոսությունների համար։ Տեղեկատուն ունի նաև պատմահեղափոխական օրացույց և այլ նյութեր։

Ռ. ԻՇԽԱՆՅԱՆ— Բակունցի կյանքն ու արվեստը. «Հայաստան» հրատ., 1974։

Ռ. ԱԹԱՅԱՆ— Աշակերտների գեղագիտական դաստիարակությունը. «Լույս» հրատ., 1974։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴԴԵՄ ԱՂՈՒՏՆԵՐԻ

*Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսարանի և Դոնի գյուղատնտեսական ինստիտուտի մի խումբ գիտնականներ, պրոֆեսոր Ա. Վադյունինայի ղեկավարությամբ, մշակել են ոչ մեծ տարածություններն աղազերծող շարժական էլեկտրամելիորացիոն սարք։ Այն բաղկացած է երկու խողովակաձև ցանցսեկցիաներից, ջրատար ցիստեռնից և մշտական հոսանքի աղբյուրից։ Տրակտորը սարքը մոտեցնում է աղուտաբծերին և կատոդ-ցանցերից մեկը տեղավորվում է ուղղակի հողում։ Դրա խողովակներով ջուր են բացթողնում՝ հողը թրջելու համար։ Մյուս ցանց-անոդը ցցաձողային-էլեկտրոդներով տեղադրում են ներքևում այնպես, որ ցցաձողերը մտնեն հողի մեջ, բջիջների արանքը։ Այնուհետև ցանցերին միացնում են 40—80 վոլտ լարվածության մշտական հոսանք։ Էլեկտրական հոսանքի ազդեցությամբ խոնավ հողում կատարվում է էլեկտրակինետիկ ռեակցիա։ Բույսի համար վտանգավոր աղերը հոսանքի ազդեցությամբ լուծվում են, հողը լվացվում է։ Էլեկտրական հոսանքն ունի մի ազդեցություն ևս. այն հողի մեջ բարելավում է ջրի ֆիլտրացիան, նվազեցնելով դրա լվացման ծախսերը։*

## ԻՈՆԻՏՆԵՐՆ ԸՆԴԴԵՄ ԳԱԶԻ

«Гинцветмет» *ինստիտուտի մասնագետներն ստեղծել են հատուկ թել՝ իոնափոխանակային կույրից։ Այն կդառնա նոր տիպի ֆիլտրի հիմքը. ֆիլտր, որն արագությամբ կկլանի զանազան գազեր։ Օրինակ, էլեկտրոլիզային վաննաների իոնիտային «հագուստը» կկլանի արտադրության պրոցեսում առաջացող գազերի զգալի մասը և կփակի դրանց մուտքը դեպի արտադրամասեր։ Նորույթն ունի բարձր օդամաքրիչ հատկություն և շատ պարզ կառուցվածք։*

*Իոնիտային գազորսիչ սարքերն արդեն փորձարկվում են մեր երկրի ձեռնարկություններում։*

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՆԵՐԿ

*Անգլիական ֆիրման թողարկել է «Յունիդեկ» ներկը, որը պարունակում է փայտի թեփ և բակտերիցիդային ու ֆունգիցիդային նյութեր։ Ներկը թունավոր չէ, չի տարրալուծվում, ալկալիների նկատմամբ կայուն է, շենքերում նվազեցնում է խոնավության խտությունը. առաջարկվում է գործածել պատերի ու առաստաղների ճեղքերը ներկելու համար։ Վրձինով կամ ներկանիվով քսված ներկը մակերեսներին տալիս է գեղեցիկ տեսք։ 8 քմ մակերեսը ներկելու համար ծախսվում է մոտ մեկ լիտր «Յունիդեկ»։*

## ՄԻԿՐՈՍԿՈՊԸ ՀԱՅՏԱԲԵՐՈՒՄ Է ՎԻՐՈՒՍԸ

*Ալերգիայի և ինֆեկցիոն հիվանդությունների ամերիկյան ազգային ինստիտուտի աշխատակիցներն առաջին անգամ էլեկտրոնային միկրոսկոպի օգնությամբ հայտնագործել են լյարդի հեպատիտ առաջացնող վիրուսը։ Դա հնարավորություն կտա կանխորոշելու հիվանդությունը և ոչ հեռու ապագայում մշակելու վակցինա և պրոֆիլակտիկ այլ միջոցներ։*

## ԽՈՍՈՂ ԴԱՍԱԳԻՐՔ

*Ճապոնական «Ռիկո» ֆիրման թողարկել է ուսուցանող «սինխրոֆաքս» սարքը։ Այն հետաքրքրական է նրանով, որ և՛ գրաֆիկական ինֆորմացիան, և՛ ձայնահաղորդումը գրանցվում են նույն թերթի տարբեր երեսներին։ Թերթի մի երեսին զետեղվում են անհրաժեշտ գծագրեր, գրաֆիկներ, օտար լեզվով տեքստեր, իսկ հակառակ երեսին, մագնիսային շերտի վրա, բացատրական տեքստն է։ Աշակերտն այդ թերթը դնում է սարքի աշխատանքային մակերեսին, կարդում մակագրությունները, դիտում գծագրերը, իսկ նույն պահին ականջակալներով վերարտադրվում է ուսուցչի բացատրությունը։ Սարքը հարմար է խմբակային պարապմունքների համար։*